# ՀԱՅՔ Ի Կ. ՊՈԼԻՍ

## ՔՍԱՆԵՐՈՐԴ ԴԱՐՈՒ ՍԿԻԶԲԸ

ԳՐԵՑ

ԱՐԾՐՈՒՆԻ



ՓԱՐԻԶ

ՀԱՅԿԱԿԱՆ ՏՊԱՐԱՆ

1906

# ՀԱՅՔ Ի Կ. ՊՈԼԻՍ

## ՔՍԱՆԵՐՈՐԴ ԴԱՐՈՒ ՍԿԻԶԲԸ

ԳՐԵՑ

ԱՐԾՐՈՒՆԻ





ՓԱՐԻԶ

ՀԱՅԿԱԿԱՆ ՏՊԱՐԱՆ

1906

# «ԶԵԿՈՅՑ»

*Վերջին անգամ Կ. Պոլիս այցելութեանս առթիւ, մեր այդ տեղւոյ Ազգայնոց վիճակին մասին գրած ընդհանուր տեղեկագիրս՝ հրատարակուեցաւ Գահիրէի «Լուսաբեր» լրագրոյ անցեալ տարւոյ Յունիս 15 էն Սեպտ. 5 ի թիւերուն մէջ, կրելով այդ լրագրոյ խմբագրութեան կողմանէ ինչ ինչ յապաւումներ։ Շատ մը Ազգայնոց խնդրանաց վրայ մասնաւոր տետրակաւ մը առանձին կը հրատարակենք զայն յաւելլով զեղչեալ մասերն։*

ԱՐԾՐՈՒՆԻ

1 *Նոյեմբեր* 1906 ՓԱՐԻԶ

# ՀԱՅՔ Ի Կ. ՊՈԼԻՍ

## ՔՍԱՆԵՐՈՐԴ ԴԱՐՈՒ ՍԿԻԶԲԸ



Տասն և հինգ տարի կայ որ թողած էի Օսմանեան մայրաքաղաքը. վերջերս գործի համար հոն այցելութիւն մը կատարած ըլլալով՝ բոլորովին կերպարանափոխ գտայ զայն, ու երեք ամսուայ միջոցի մը մէջ հաստատեցի թէ՝ իր 150,000 հայ բնակչութեամբ հայերուս ամենէն մեծ ու կարևոր կեդրոնն համարուած Վոսփորի ափերն այլևս հեռի են այն երբեմնի մխիթարական վիճակէն, ուր հայուն նիւթական և բարոյական զարգացման կեդրոն և հնոց կը նկատուէին, և թէ հոն՝ Պատրիարքական իշխանութիւնն իր ոյժը, ուսումնարանք իրենց փայլը, ազգային գործիչք իրենց եռանդը, կրօնականութիւնն իր շուքը, մեծատունք իրենց արժանապատուութիւնը և ժողովուրդըն իր կարևորութիւնը կորսնցուցած են։

Այս տեսութեան մէջ պիտի փորձեմ ընթերցող հասարակութեան ներկայացնել Կ. Պոլսոյ Հայութեան ներկայ վիճակը։

Փարիզ 8 Յունիս, 1905 ԱՐԾՐՈՒՆԻ





## ՍԱՀՄԱՆԱԴՐՈՒԹԻՒՆ
## ԵՒ ԵՐԵՍՓՈԽԱՆԱԿԱՆ ԺՈՂՈՎ

*Սահմանադրութիւնն է Թրքահայոց Պատրիարքական իշխանութեան վարչական Օրինագիրքը: Ասիկայ ամփոփումն է դարերէ ի վեր Հայոց Օսմ. Վեհապետներէ ստացած առանձնաշնորհութեանց, զոր վերջացող դարուն վաթսունական թուականներուն խումբ մը ազգասէր գործիչներ (*) ի մի հաւաքելով, ու անոնց աւելի հասարակապետական վարչութեան օրինագրքի մը ձևը տալով «Սահմանադրութիւն» անուանեցին և յաջողեցան վաւերացնել տալ Կայսերական կառավարութենէն և մտցնել Օսմ. Պետութեան Օրինագրքին՝ «Տիւսթուր»ի մէջ (1862): Արդարև Հայոցս համար մեծ պատիւ մ'էր՝ միապետական իշխանութեան մը ներքև Սահմանադրական ազգ մ'ըլլալ, ինչ որ մեծապէս նպաստած է Թրքահայոց բարոյական և իմացական զարգացման: Այժմ այդ Սահմանադրաբար ինքնավարական իրաւասութիւնը գրեթէ խլուած է մեզմէ, և շատեր որ երբեմն մեծ կարևորութիւն չէին տար այդ օրինագրքին և Ազգային իշխանութեան՝ այսօր կըզգան կորըստեան մեծութիւնը, ճիշդ նման այն մարդոց՝ որք իրենց առողջութիւնը կորսնցնելէ ետքը կը ճանչնան անոր*

(*) Նիկողոս Պալեան, Յովհաննէս Տատեան, Նահապետ Ռուսինեան, Գրիգոր Աղաթոն, Սերվիչէն, Գրիգոր Օտեան, Ստեփան Ասլանեան, ևայլն:

արժէքը, և կամ հարստութիւնը մսխելէ ետքը կըզգան դըրամին հզօր ազդեցութիւնը ։

Կառավարութիւնն արդէն քսան տարիներէ ի վեր սկսած էր չափազանց գտնել այդ օրինագրքով տրուած իրաւասութիւնները, և կ՚ուզէր սեղմումներ ընել, սակայն Պատրիարքներն ու ազգայինք ամէն կերպով կ՚աշխատէին պահպանելու Սահմանադրութ՚համբ գծուած իրաւունքները։ Վերջապէս՝ 15 տարի առաջ կառավարութիւնն արգիլեց առանց հրամանի Ընդհանուր Ժողովի գումարումը, հրաման՝ որ խիստ կարևոր պարագայից մէջ կը տրուէր, ինչպէս՝ Վարչական Ժողովոց և Պատրիարքաց ընտրութեան առթիւ ։ Յետոյ՝ արգիլուեցաւ Սահմանադրութեան տարեդարձի մեծահանդէս տօնումն ալ։

Իզմիրլեան Սրբազան ոչ միայն Ընդհ. Ժողովով ընտրուեցաւ այլ և ընտրել տուաւ Ալէաթճեան Եպիսկոպոսը իբրև Կաթողիկոս Սսոյ, և յաջողեցաւ իսկ Սահմանադրութեան տարեդարձի հանդէսը տօնելու հրաման ստանալ։

Մեծ ջարդերէն ետքը, 1896 ի վերջերը, Կայս. Կառավարութիւնը փորձեց իր կողմանէ կարգուած Քաղաքական Ժողովոյ մը ձեռօք վարել Ազգ. գործերը և ընտրել Պատրիարքն ու Ժողովները։ Այս «Սուլթանընտիր» ժողովը կազմուեցաւ գլխաւորապէս կառավարութեան պաշտօնեայ հայազգիներէ. ազգը շատ դժգոհ մնաց։ Արթին փաշա Տատեան յաջողեցաւ իր պատասխանատուութեան տակ գումարել տալ Երեսփ. Ժողովը և կատարել տալ Պատրիարքի և օրինական վարչական ժողովոց ընտրութիւնները։ Օրմանեան Սրբա-

զան Պատրիարք ընտրուելով՝ Ազգ. Սահմանադրութեան Օրինագրքին վրայ կատարեց իր ուխտը (1896), սակայն անկէ ետքը ո՛չ Երեսփոխանութիւն գումարուած է, ո՛չ Վարչական Ժողովներ վերակազմուած են, և ո՛չ Սահմանադրութեան տարեդարձի հանդէս տօնուած է:

Շատոնց ի վեր զգացուած էր Սահմանադրութեան վերաքննութեան պէտքն և քանիցս այդ միտքով յանձնաժողովներ կազմուած էին. 6–7 տարի առաջ՝ Ստեփան փաշայի ատենապետութեամբ Վարչական Յանձնաժողով մը կազմուելով այդ գործը ի գլուխ ելած է, սակայն քանի որ Երեսփոխանութիւն չէր գումարուէր՝ անհնար էր զայն վաւերացնել վերաքննութեամբ, և մանաւանդ կայս. կառավարութեան վաւերացման ենթարկել:

Այժմ Սահմանադրութիւն» բառն իսկ արգիլուած է գործածել, և ընդհանրապէս «Պատրիարքարանի Օրինագիրք» կ՚անուանեն զայն : Սահմանադրութեան հաստատման տարեդարձը չտօնուիր, և այդ օրը միայն Եպիսկոպոս մը կը պատարագէ Եդի–գուլէի Ազգ. Հիւանդանոցի մատուռը, որու պարտէզին մէջ տեղի կ՚ունենար այս Ազգային մեծ հանդէսը:

Սսոյ Կաթողիկոսի ընտրութիւնն առանց Ընդհ. Ժողովոյ մասնակցութեան և վաւերացման տեղի ունեցաւ, և շատ հաւանական է որ յաջորդ Պատրիարքի մը ընտրութեան առթիւ իսկ չպիտի գումարուի, զի քաղաքականութիւնն աւելի փափկացած է, և ազգին մէջ այլևս Արթին փաշայի պէս մեծ և կարող անձնաւորութիւն մը չկայ որ գոնէ այսպիսի կարևոր խնդ-

րոյ մասին ազգային իրաւունք մը յարգել տալու համար՝ յանդգնի մինչև ուղղապէս Սուլթանին դիմելու և յաջողի ձեռք բերելու այդ թոյլտուութիւնը։ Եթէ իրաց վիճակը ընդ երկար շարունակուի՝ Ազգ. Սահմանադրութիւնն թաղուած կրնայ համարուիլ։



## ՎԱՐՉԱԿԱՆ ԺՈՂՈՎՔ ԵՒ ԽՈՐՀՈՒՐԴՔ

Երեսփոխանական ժողովոյ գումարման անհնարութեան հետևանօք՝ կազմալուծեալ են վարչական երկու մեծ ժողովները—Կրօնականն և Քաղաքականն – որք անկէ կ՚ընտրուին։

Կրօնական ժողովն որ ութը տարիներ առաջ Պատրիարքական Ընտրութեան առթիւ կազմուած է՝ ըստ օրինի 14 անդամներէ կը բաղկանայ, սակայն այժմ անոնց 5ը վախճանած, և 2ը առաջնորդ ընտրուած են ուստի կը մնայ 7 անդամ, որոց մին՝ Պատրիարքըն է, իբր պաշտօնական նախագահ, որ քիչ անգամ կրնայ աշխատակցիլ, մին՝ Պատրիարքական փոխանորդն է որ նմանապէս չէ կարող միշտ ներկայ գտնուիլ, հետևաբար կը մնան 2 Եպիսկոպոս և 3 ծեր քահանայ, որք քիչ անգամ իմիասին կը հաւաքուին. այնպէս որ տակաւ 3 անդամներով ժողով կը գումարուի, և վճիռներ կը տրուին..., մինչդեռ ըստ Սահմանադրութեան Կրօնական ժողովէն 3 անդամներ պակ-

սելուն՝ իր օրինականութիւնը կը կորսնցնէ ու պարտի Ազգային ժողովոյ կողմանէ նոր ընտրեալներով պակ-սածներուն տեղը լեցնել .(Յօդ. 27)։

Այս կրօնական հարք որոց օրինական գործու-նէութեան շրջանն արդէն 6 տարիներէ ի վեր աւար-տած է՝ յոգնած անձնաւորութիւններ են. քանիցս ուզած են քաշուիլ, սակայն Բարձ. Դուռն գիտնալով որ այ-լոց ընտրութեան համար Երեսփոխանութեան գումար-ուիլն անհրաժեշտ է չթոյլատրեր յաջորդներու ընտ-րութիւնն, և շքանշաններով և ի ձեռն Պատրիարքի ա-նոնց կրօնական աստիճաններ առնել տալով (եպիս-կոպոսութիւն, արքեպիսկոպոսութիւն, աւագերեցութիւն, լանջախաչ, ծաղկեայ փիլոն եայլն) կը սիրաշահի զա-նոնք։

Այս մի քանի ծերունիներէ բաղկացեալ Կրօն. ժողովն որ կոչուած է այնչափ ծանրակշիռ խնդրոց մասին վճիռ արձակել՝ ստէպ խաղալիք կ'ըլլայ մաս-նաւորներու շահուց և քմահաճոյքից և տարօրինակ որոշումներ կուտայ իմասին կրօնաւորաց, ու մանաւանդ ամուսնական խնդրոց, ինչպէս Զմիւռնիոյ Աբեղեանին խնդրոյն առթիւ տրուած վճիռն, որ իր տարօրինա-կութեամբ աշխարհածանօթ եղաւ ... և որ հաւանօրէն հոգևոր բարձրագոյն իշխանութեան կողմէ պիտի բե-կանի յառաջիկային։

Քաղ. ժողովն, միևնոյն առթիւ 8 տարի առաջ ընտրուած՝ այսօր գրեթէ միևնոյն վիճակի մէջ կը գտնուի։ Իր օրինական 14 անդամոց 3ը արդէն վախ-ճանած են, 2ը ծեր ու հիւանդ ըլլալով՝ երբեք չեն

մասնակցիր ժողովոց, Զը՝ տարիներէ ի վեր ժողովի չեն գացած, մնացեալ 7 ին երեքը շատ քիչ անգամ կ՚երթան. հետեւաբար՝ առհասարակ 4 հոգիով միայն կը գումարուի Քաղ. Ժողովը: Ասոնք ալ քանիցս ուզած են քաշուիլ, սակայն՝ նմանապէս պատուանշաններով և պատուատիճաններով սիրաշահուած են :

Ըստ Սահմանադրական օրինաց տրամադրութեան երեք անգամ բացակայ եղող անդամներուն երկիցս ազդարարագիր կը ղրկուի, ու եթէ չը պատասխանեն՝ հրաժարեալ կը համարուին (Յօդ. 39): Ըստ որում Քաղ. Ժողովոյ բոլոր անդամները հրաժարեալ կրնան համարուիլ ի բաց առեալ Յուսուֆեան և Տէր Ներսէսեան էֆէնտիները:

Քաղ. Ժողովոյ անուանական 9 անդամոց 5 ը կառավարական պաշտօնեաներ են, որոց տալիք որոշումները շատ անգամ իրենց կը հաղորդուի . . . և որոնց բնականաբար կը համակերպին ստիպեալ :

Այս երկու վարչական ժողովոց իմիասին գումարմամբ կը կազմուի Խառն Ժողովն, որ կը վճռէ ազգին ամենակարևոր և ծանրակշիռ խնդիրները, և որ սակայն շատ անգամ 9–10 անդամներէ միայն կը բաղկանայ: Տեսնուած են աւելի նուազ թուով, նոյնիսկ երկու կրօնական անդամներով Խառն Ժողովներ որք նոյնպէս շատ կարևոր որոշումներ տուած են:

Ըստ Սահմանադրական. Օրինաց՝ Խառն Ժողովն խնդրոյ մը մասին որոշում. տալու համար Կրօնական և Քաղաքական ժողովոց անդամներն պարտին առանձին քուէարկել. եթէ միևնոյն որոշման յանգին՝ վճիռն

օրինական կ՚ըլլայ, իսկ եթէ որոշումներն անհամաձայն ըլլան՝ պարտին Երեսփոխանական ժողովոյն ներկայացնել խնդրոյ լուծումը։ Եթէ այս օրէնքն նկատի առնուի խառն ժողովոյ և ոչ մէկ վճիռն օրինական կրնայ համարուիլ։

— Դատաստանական, Ուսումնական և Տնտեսական խորհուրդներն որք ըստ Օրինի երկու տարին անգամ մը վարչութեանց հետ նորոգուելու են, նոյնը մնացած են 8 տարիներէ ի վեր. և թէպէտ պատահած են իրենց օրինական թիւերը՝ սակայն այդ օրինականութիւնն առերևոյթս է, և ամէն անգամ որ անդամ մը վախճանմամբ կամ հրաժարմամբ նուազի՝ Քաղ. ժողովն ուրիշ մը կ՚ընտրէ, և սա աւելի փափաք ունեցողներէն, և Պատրիարքի հաճելիներէն, որով շատ անգամ՝ այդ անդամոց շատերը հեռի են իրենց պաշտօնի համապատասխան հմտութիւն և յարմարութիւն ունենալէ։

Խորհրդոց անդամք ևս սիրաշահուած են պաշտօնանշաններով, ի բաց առեալ անոնցմէ որք իրենց քննադատական տեսութեանց համար համակրութիւն չեն վայելեր։

— Վանօրէից Խորհուրդ, Ելևմտից և Կտակաց Հոգաբարձութիւնք գոյութիւն չ՚ունին։

— Ս. Փրկչեան Հիւանդանոցի Հոգաբարձութիւնն և Գալֆաեան աղջկանց Որբանոցին տիկնանց Խնամակալութիւնն Քաղ. ժողովէն ընտրուած են, որոնց մասին պէտք է խօսինք յառաջիկայ հատուածներու մէջ։





## ՅԱՆՁՆԱԺՈՂՈՎՔ, ԽՆԱՄԱԿԱԼՈՒԹԻՒՆՔ ԵՒ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆՔ

*«Եկեղեցական երգեցողութեանց» յանձնաժողովն անուանական գոյութիւն մ'ունի: «Ուսուցչաց համագրատեան սնտուկի» յանձնաժողովը Ս. Պատրիարքն կը վարէ Ատենապետին հետ: Այս սնտուկն դեռ շատ աղքատ է, և դեռ ի վիճակի չէ իրական օգնութիւն մը ընելու կարօտ ուսուցչաց:*

*«Նպաստից Յանձնաժողով»ը պաշտօն ունի գաւառական մի քանի վարժարանաց, եկեղեցեաց և աղքատ հասարակութեան նպաստներ հասցնել, արտասահմանէ և Կ. Պոլսոյ մեծատուններէն տրուած նպաստներու շնորհիւ: Ս. Պատրիարքը տարիներով առանձինն վարեց այդ սնտուկը առանց ո՛ և է հաշուետուութեան, երբ ամէն կողմէ նպաստներ կը հանէին. վերջերս միայն երբ գանձը դատարկացաւ և նպաստները վերջ գտան՝ յանձնախումբ մը կազմուեցաւ անուանական անդամներով, որոնց Ատենապետին հետ կը գործէ Ս. Պատրիարքը. կ'ըսուի թէ այս սնտուկէն նպաստուած են վարդապետք ոմանք և այլք...:*

*«Իզմիրեանց մրցանակի յանձնաժողով»ը աւելի հակամիտութիւն ունի Արմաշականները և երբեմն ալ անկեալները նպաստաւորելու քան թէ իրապէս արժանաւոր գործերը:*

*«Մանասարեան Վարժարանի Խնամակալութիւն»ը*

*բաւական լաւ գործունէութիւն մ՚ունի: Ցաւալի է միայն որ վարժարանը դէպի արեւմուտք (Խարբերդ կամ այլուր) փոխադրելու կարեւոր ծրագիրը գործադրելու փոյթ չտարուիր:*

*Երբեմնի «Սովելոց Յանձնաժողովին» հաւաքած դրամէն մնացեալ գումարը որոշուած է գործածել Արհեստական Վարժարանի մը հիմնարկութեան. ուստի այդ մարմինը առաւ «Արհեստական Վարժարանի Յանձնաժողով» անունը: Այդ ծրագիրը տարիներէ ի վեր անգործադիր կը մնար: Ազգ. Հիւանդանոցի Հոգաբարձութիւնն իր խնամոց յանձնուած Որբանոցի մէջ արհեստից ճիւղեր հաստատելուն՝ դրամագլխի եկամուտէն տարեկան 600 ոսկի կը տրուի այդ հաստատութեան:*

*«Դպրեվանուց և Կեդրոնական Վարժարանի Խնամակալութեանց» համար պիտի խօսինք Վարժարանաց յատուկ յօդուածին մէջ:*

*— Ազգային Ընկերութիւնք իսպառ լուծուած են, և անոնց կազմութիւնն արգիլեալ է: Միացեալ Ընկերութիւնն, որուն անցեալ գործունէութիւնն և գաւառային վարժարանաց մատուցած ծառայութիւններն ամէնուն ծանօթ են՝ լուծուած է վերջին տարիներս, հետեւաբար իր խնամոց յանձնուած բազմաթիւ վարժարանները փակուած են: Այս ընկերութեան գոյքերը և մենաշնորհ եղած գրքերը՝ որք բաւական արդիւնք կուտային՝ «Նպաստից Յանձնաժողով»ին տրամադրութեան տակ դրուած են: Տէր Ղեւոնդեանցի «Մայրենի լեզու»ներն այս ընկերութեան մենաշնորհն ըլլալով երբեմն այնչափ արդիւնաբեր էին, բայց հիմա գրավաճառի մը*

կողմէ անոնց կեղծերը կը հրատարակուին, և շատ պակաս շա՞տ կուտան «Նպաստից Մնտուկին»։





## ԳԱՒԱՌԱՑ ԱԶԳ. ԳՈՐԾԵՐՆ

Գաւառաց մէջ Սահմանադրութիւնը առերեւոյթս աւելի կը յարգուի։ Կարեւոր պարագայից, զոր օրինակ՝ Առաջնորդի և Վարչական ժողովոց Ընտրութեան առթիւ է որ Երեսփոխանութիւնն կը գումարուի, սակայն շատ անգամ իրենց ուղղութիւնն նախագծուած է։ Զոր–օրինակ, ազատ չեն Կ. Պոլսոյ ամուրի եկեղեցականաց մեծ «աղօք»էն իրենց ուզած քանտիտան ընտրելու, զի անոնց մէկ մասն դատապարտուած է մայրաքաղաքէն դուրս չ'ելլելու, և եթէ ընտրուին՝ Պատրիարքարանը կը բեկանէ ընտրութիւնը, ինչպէս տեղի ունեցաւ Եզիպտոսի համար, ու ստէպ իրենց չճանչցած, չհամակրած և նոյնիսկ արհամարած անձ մը կ'ստիպուին ընտրել, և մերթ անուղղակի ճնշման տակ, ինչպէս Բարթողիմէոս Եպիսկոպոսի ձեռնասուն Արիստակէս վարդապետին Ամասիոյ Առաջնորդ ընտրուիլը. վարդապետ մը որ գրեթէ քանդեց այդ վիճակը, ծախելով մինչև իսկ իր հաշւոյն Ազգ. Գերեզմանատուն մը, դրամի փոխարէն տալով սուտ վկայագրեր, կատարել տալով առևանգումներ... և վերջապէս գտնուելով կուսակրօնի անվայել այնպիսի վիճակի մէջ՝ որ նոյն իսկ տեղական Թուրքերը սկսած են ձայն բառնալ և կու-

տակաւին հարկ տեսած է զայն յանդիմանել... Թէ և այս ամէնը արգելք չէին լինէր որ տեղւոյն Վարչական Ժողովներն՝ առ ահի՝ անոր եպիսկոպոսանալը կը պահանջէին և Պատրիարքարանը զայն կը վաւերացնէ... Բարթողիմէոս Եպիսկոպոսի ազդեցութեան տակ: Ամասիացիք այժմ օգտուելով իրենց Առաջնորդի բացակայութենէն՝ դրացի վիճակի մը Փոխ-Առաջնորդը բերել տուած են, իրենց խանգարեալ Ազգ. գործերը կարգադրել տալու համար, սակայն հաւանականաբար Արիստակէս Եպիս. Ամասիա դառնալուն տակն ու վրայ պիտի ընէ ամէն ինչ և պիտի շարունակէ իր շահատակութիւններն:

Ժողովուրդը չը կրնար բողոքել վախէն, և նոյն իսկ բռնի ջատագովականներ գրուած և հրատարակուած են իր մասին: Սա օրինակ մ'է միայն, պակաս չեն ուրիշ նմաններ:

Ինչպէս կը տեսնուի՝ իրաց այս դրութեան մէջ ստէպ նախապատիւ է որ վիճակներն առանց կուսակրօն առաջնորդի մնան, և տեղական քահանաներով կառավարուին, քան թէ այդպիսի ձեռքերու յանձնուի ազգային իշխանութիւնն որ միայն քանդելու և իրենց քսակները լեցնելու կը ծառայեցնեն:

Գաւառաց մէջ երբ առաջնորդք ունին վարչական կարողութիւն՝ Ազգ. ժողովներն և խորհուրդներն բաւական կանոնաւոր են, և արդիւնաւոր գործունէութիւն մը կ'ունենան. իսկ հակառակ պարագայից մէջ՝ գործոց բնական բերմամբ՝ այդ մարմիններն անուանական գոյութիւն մը կ'ունենան, և աւելի մասնաւորաց շա-

հերուն և «էնթրիկ»ներուն գործիչ կ'ըլլան քան թէ Ազգին օգտակար։ Այս ապօրէն գործունէութեան հետեւանօք յառաջ կուգան երկպառակութիւններ, կուսակցութիւններ և ընդդիմադիր մարմիններ, որոնց արձագանք կուտան Կ. Պոլսոյ թերթերը։

— Գաւառներու մէջ կան «Վանօրէից Խորհուրդ»ներ, սակայն ընդհանրապէս առաջնորդներն են որ կը վարեն վանքերը, կամ թէ մեծ աղաները, որոնցմէ շատերը իրենց շահերուն կը գործածեն զանոնք։

— Վարժարանաց Հոգաբարձութիւնք շատ տեղեր Ուսումնական Խորհրդոց յանձնուած են։

— Հազուագիւտ են ընկերակցութիւններ որք վարժարանաց նպաստելու նպատակով կազմուած ըլլան։

— Գաւառային «Որբանոցներն և Որբանոց արհեստանոց»ներն՝ որոնք բացուեցան մեծ ջարդերէն ետք, և արտասահմանէ հասած նպաստներով կը հոգացուէին՝ վերջին տարիներս փակուեցան։ Մի քանի քաղաքաց մէջ տեղացիք կ'աշխատին իրենց միջոցներով պահել որբանոց արհեստանոցները։

Միայն Զմիւռնիոյ և Սեբաստիոյ մէջ կան Գաւառ. Ազգ. Հիւանդանոցներ որոնք օգտակարապէս կը ծառայեն։





## ԹԱՂԱԿԱՆ ԽՈՐՀՈՒՐԴՔ ԵՒ ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆՔ ՎԱՐԺԱՐԱՆԱՑ

Կ. Պոլսոյ «Թաղական Խորհրդոց» շատ քիչեր Օրինական Ընտրութեամբ կազմուած են. ատոնց մի

մասն «առժամանակեայ» անուան տակ Պատրիարքարանէ ընտրուած են, որք տարիներէ ի վեր կը շարունակեն. իսկ ուրիշներ երբեմն ընտրեալ Թաղական խորհրդոյ անդամոց մահուամբ և կամ հրաժարմամբ նուազածներուն տեղ ուրիշներ կարգուելով հետզհետէ Պատրիարքարանի կողմանէ՝ ունին ամբողջական ձեւ մը, և որով շատ անգամ անդամոց և ոչ մին բուն ժողովրդեան կողմանէ ընտրեալներ են: Այս կարգէն է Բէրայի Թաղական խորհուրդն՝ որ իր գլուխն ունի Ռօպէռ էֆէնտին: Թաղական խորհրդոց կ'անդամակցէին երբեմն Թաղի ամենէ պարկեշտ և կարող անձնաւորութիւնք, այսօր այդ պատուոյ աթոռներն շատ անգամ Թաղին անկարող երիտասարդաց և կամ աննըշան անձնաւորութեանց բաժին մնացած է, որով և Թաղականնութիւնն կորսնցուցած է իր շուքն: Ժողովուրդն ստէպ Թաղ. խորհուրդոց մասին գանգատանաց առիթներ կ'ունենայ, սակայն քիչ անգամ կը յայտարարէ. զի սա կրնայ Թաղային անհամաձայնութեանց ու երկպառակութեանց ծնունդ տալ, որոց ոստիկանութիւնը կը միջամտէ և կրնայ կնճռոտութիւններ յառաջ բերել: Ուստի և ժողովուրդն սկսած է անտարբեր մնալ Ազգ. գործոց մասին: Երբեմն Թաղ. խորհրդոց ընտրութեան առթիւ իսկ ոստիկանութիւնն միջամտած, արգիլած և նոյնիսկ մէկ քանի անձեր բանտարկած է, և որք ապա Պատրիարքարանի միջամտութեամբ միայն կրցած են իրենց օձիկները ազատել:

—«Վարժարանաց հոգաբարձութեան» դերն շատ

անգամ թաղ. Խորհուրդք կը ստանձնեն կամ իրենց մի քանի անդամներուն կը յանձնեն այդ գործն, և երբեմն ալ մասնաւոր մարմին մը կը կազմեն՝ որոյ աջակից և առաջնորդ կուտան իրենց անդամներէ մին:

Դժբաղդաբար վարժարանաց Հոգաբարձութեան պաշտօնի կոչուող անձնաւորութիւններէն շատ քիչեր յարմար են իրենց պաշտօնին. ու ստէպ՝ դպրոցի տնօրէնութեան գործերուն խառնուելու, իրենց հանդէպ խորին յարգանք չտածող ուսուցիչները հրաժարեցնելու, և կամ անուշիկ աչքեր ունեցող վարժուհիի մը պաշտօն ճարելու, և իրենց մէկ ազգական ուսուցչին ամսականն աւելցնելուն մէջ կը կարծեն իրենց դերն:

Կեդրոնական վարժարանն՝ որ բարձրագոյնն է Կ. Պոլսոյ վարժարանաց, և երկրորդական վարժարանի մը ծրագիրէ փոքր ինչ բարձր ծրագիր մ՚ունի՝ իրեն Հոգաբարձու ունի Գալաթիոյ Խնամակալութիւնն՝ որոյ գործօն անդամոց մին միայն դպրոցի լեզուէ կը հասկընայ, ու այն ալ ունելիով բռնած է գործն:

— Սրմաշի Դպրեվանուց Խնամակալութիւնն բարեբախտաբար չխառնուիր վարժարանի ծրագրին ու տնօրինական գործերուն, և վանքի վերատեսուչն՝ ըստ գծուած ծրագրի և ուղղութեան կը վարէ դպրեվանքն. և այս Խնամակալութեան չափազանց խնայողական սկզբանց դէմ տրտունջ կը յայտնէ միշտ:





## ՎԱՐԺԱՐԱՆՔ

Ազգ. ազատ վարժարանաց գլխաւորն է Պէրպէրեանը, որ երկրորդական վարժարան մ՚է, և բաւական յաջող. իսկ Նիկողոսեանի, Բազրատունիի, Փալագաշեանի, ևն. հաստատութիւններ նախակրթարաններ են և դեռ մեծ յաջողութիւնն մը չ՚ունին: Ազգային վարժարաններն երեք դասի կը բաժնուին. մանկապարտէզներ, նախակրթարաններ և բարձ. վարժարան:

Հինաւուրց ծաղկոցներն այժմ մանկապարտէզի վերածուած են, ուր փափաքով ու վազելով կ՚երթան դեռատի մանուկներն՝ փոխան լալով բացակայութեան պատրուակներ որոնելու՝ որպէս կ՚ընէին հինաւուրց ընտելարաններու համար: Մանկապարտէզներն Կ. Պոլսոյ մէջ մուծանողն եղած է Տիկ. Մատակեան, ռուսահայ կին մը՝ որ կիրակնօրեայ դասերով շատ մը մանկապարտէզպանուհի անուանեալ ուսուցչուհիներ հասուցած է, որք կը շարունակեն իր գործն:

Մանկապարտէզներու ծրագիրն է մանկանց զբօսանքով սովրեցնել՝ խօսիլ, երգել, քալել, պարել, մարմնամարզ, տարրական իրազիտութիւն, կարդալ, հաշուել և գրել: Մանկապարտէզի շրջանը երեք տարի է, չորս տարին լրացուցած մանուկներ կ՚ընդունուին աղջիկ մանչ խառն:

Ամէն թաղ իւր նախակրթարանն ունի, ուսումնական խորհրդոյ միևնոյն ծրագրով: Նախակրթարաններն

երեք դասընթացքի բաժնուած են — «տարրական, միջին և բարձրագոյն», իւրաքանչիւրն երկու տարուան շրջանով։ Փոքր՝ թաղերն միայն տարրական դասընթացք ունին, այլք տարական և միջին, և մի քանիներ՝ տարրական, միջին և բարձրագոյն միանգամայն. վերջերս Բերայի, Գումգաբուի և Սկիւտարի Ս. Խաչի նախակրթարանները աղջկանց բաժիններն ունեցան և «լրացուցիչ» դասընթացք մը երկու տարուան շրջանով. և ոչ մի նախակրթարանի մանչերու բաժինն ունի լրացուցիչ դասընթաց։ Եւ սա՝ աւելորդ է, զի մանչերն կրնան Կեդրոնական վարժարանն երթալ։

Ուսումնական խորհուրդն հակառակ իր ջանից չկրցաւ ունենալ շրջուն տեսուչներ կամ գոնէ տեսուչ մը իր ծրագրի գործադրութեան հսկող, ու այդ նպատակաւ իր կարգած պաշտօնէից ամսականք անվճար մնացած են տարիներով...։ Ուսումնական խորհրդոյ որոշումներն այսպէս սոսկ թուղթի վրայ կը մնան, զայն գործադրելու համար ոչ մասնաւոր պիւտճէ և ոչ ալ բարոյական ոյժ ունի։ Թաղ. ժողովն չէ ըրած ու չըներ պէտք եղած պաշտպանութիւնը ։

Նախակրթարանաց ծրագիրը գրեթէ հաւատարիմ թարգմանութիւն մ'է ֆրանսական նախակրթարանաց ծրագրոյն, կատարուած Ռ. Պէրպէրեանի ձեռքով, յաւելլով անշուշտ հայ և թուրք լեզուներու ուսումը։ Այս ծրագիրն ունի թերի կողմեր և արդէն ամենէն զգացուած է այդ, ու վերաքննութեամբ սրբագրութիւնն որոշուած է Ուսում. Խորհրդոյ կողմէ, որ վերջերս մասնաւոր նամակներով կարողագոյն ուսուցչաց դիտո-

դութիւններն ուզած է ըստ իրենց փորձառութեանց ։ Զարմանալի է սակայն որ Պէրպէրեան էֆ. գլխաւոր հեղինակ կամ թարգմանիչ այս ծրագրին աննպաստ կը թուի Ուսում. Խորհրդոյ այս մտադրութեան ու անարգանօք կը պատասխանէ անոր՝ որ կը յանդգնի իր պատրաստած կամ թարգմանած ծրագիրն ըստ փորձառութեան սրբագրել փորձել. թերեւս մոռնալով որ ոեւէ գործ մէկ անգամէն կատարեալ չ'կրնար ըլլալ և փորձն կարեւոր միջոց մ'է կատարելութեան մօտենալու...։

Կ. Պոլսոյ Հայոց միակ բարձ. վարժարանն է Կեդրոնականն, որ ինչպէս ըսինք, երկրորդական վարժարանէ մը փոքր ինչ աւելի բարձր ծրագիր մ'ունի։ Այս հաստատութիւնն տարիներէ ի վեր զուրկ է տնօրէն մը ունենալէ, և ընդհ. կարգապահն իբր տեսուչ կը գործէ անդ. և ինչպէս տեսանք՝ խնամակալութեան մարմնոյ գործօն անդամոց մին միայն դպրոցի լեզուէ կը հասկնայ և այն ալ ամենուն հետ լաւ ըլլալու քաղաքականութեամբը կը համակերպի այլոց քմահաճոյից, որով կրնանք երեւակայել գործին ընթացքն։

Գալով ուսուցչական մարմնոյն երբեմն ընտիր և կարող անձնաւորութիւններէ բաղկացեալ էր. սակայն այժմ ուսուցչաց 6 կամ 7 ը միայն կարող են, իսկ մնացեալ մեծամասնութիւնը, կարեկցութեան կարօտ, հմտութեամբ սահմանափակ ուսուցիչներ են, յորս կան ջղայիններ ալ։ Խնամակալութեան անդամներէն երեքն ուսուցիչներ են միանգամայն որոնց երկուքի մասին աշակերտք կը գանգատին թէ՝ ժամավաճառ կ'ընեն

գիրենք, թէ տիրացած չեն իրենց դասախօսած նիւթերուն…։

Կեդրոնական վարժարանն դեռ իր հաստատակրչութիւնն գտած չէ, երբեմն գիտութեանց աւելի ոյժ կը տրուի, երբեմն դպրութեանց. մերթ այս երկուքն հաւասարապէս կը մշակուին, ժամանակ մ'ալ այս երկու ճիւղերն իրարմէ անջատուած են եղեր որպէս զի աշակերտք ըստ քմաց կարենան հետեւիլ դպրութեանց և կամ գիտութեանց բաժիններուն։ Այժմ ուսանողք պարտաւոր են վարժարանի բոլոր ուսմանց հետեւելու որ անշուշտ նախապատիւ է, զի երկրորդական վարժարանի մը մէջ աւանդուած ո'եւէ ուսում և գիտութիւն կարեւոր են ընդհ. զարգացման համար։ Կ. Պոլսոյ մէջ գտնուող հայազգի գիտուն մը ինծ ապահովցուց թէ՝ գիտական ճիւղերն ամէնէն նուազ խնամով կ'աւանդուին և զուրկ են ոչ միայն գիտութեանց հմուտ ուսուցիչներէ այլ և գիտական հաւաքածոներէ։ Բժիշկ մը վերջերս նուիրեց իւր հնէաբանական քարաբանական ճոխ հաւաքածոն, և բնապատմական ինչ ինչ առարկաները. իշխ թէ առոնք մղում մը կրնային տալ գիտական ճիւղերու ուսուցման։

Ամօթ է աշդարև որ Հայք իրենց ամենէն մեծ կեդրոնին՝ Կ. Պոլսոյ մէջ չ'ունին իգական սեռի յատուկ երկրորդական վարժարան մը։ Երբեմնի Ազապեան և Մէզպուրեան վարժարաններն կը փնտռուին, ու մեր աղջիկները շատ անգամ օտար վարժարանաց մէջ կ'ընդունին իրենց «բարձրագոյն» անուանեալ կրթութիւնն, որ ոչ միայն ցոյցարար և սնամէջ հմտութիւն

մը կուտան այլ և մեր վարուց ու բարուց անհամապատասխան օտար կրթութիւն մը։ Այս անպատեհութեանց առաջքն առնելու համար հաստատեցին մի քանի նախակրթարանաց մէջ աղջկանց համար լրացուցիչ դասընթացքներ՝ որ մասամբ միայն կրնան գոհացում տալ։

Տարիներ առաջ բարեգործ հայ Տիկին մը փորձեր է հայ աղջկանց բարձրագոյն վարժարան մը հաստատել, զարգացեալ անձիմը կողմանէ պատրաստուած ծրագրի մը համաձայն, ու անոր առաջնորդութեամբ։ Նախակրթարանաց շրջանն աւարտողները միայն պիտի կրնային ընդունուիլ անդ, եւ պիտի բոլորէին երեք տարւոյ ուսումնական շրջան մը՝ ազգ. կրթութեամբ։ Այդ հաստատութիւնն գիշերօթիկ պիտի ըլլար և վճարմամբ, ու տարին 12 աղջիկ պիտի կրնար ընդունուիլ։ Վարժարանն պիտի կրնար իր ծախսերն հոգալ, սակայն հարկ էր կանխաւ ունենալ տրամադրելի շէնք և հազար օսմ. ոսկւոյ գումար մը։ Այդ բարեսէր տի՛կինն հայ տիկնանց դիմեց անոնց աջակցութեամբ հոգալու այդ նախնական պէտքերն... ապարդիւն մնացին իր այդ ջանքերն որով և ստիպուեցաւ քաշուել իր նպատակէն։





## ՈՒՍՈՒՑԻՉՔ ԵՒ ՈՒՍՈՒՑՉՈՒՀԻՔ

Կ. Պոլսոյ մէջ ուսուցչութիւնը լինալու վրայ է. շատ քիչ են իրենց հմտութեամբ հեղինակութիւն համարուող և պատկառանք ներշնչող ուսուցիչները. ո՛չ

Թէ չեն հասնիր՝ այլ այդ ասպարէզին մէջ պէտք եղած քաջալերը ու վարձատրութիւնը չգտնելով կարողագոյնները կը քաշուին ուսուցչութենէ։ Շուրջ քսան տարիներ առաջ, Ուսում. Խորհուրդն ալ այդ դարման մը գտնելու, ուսուցչութեան մակարդակին բարձրացնելու, և Թաղականաց ու Հոգաբարձուաց պաշտպանութիւնն վայելող տգէտներն ուսուցչութեան ասպարէզէն հեռացնելու մտօք՝ ուսուցչաց քննութեամբ ըստ արժանեաց վկայագրեր տալու դրութիւնը հաստատեց։ Տարիներէ ի վեր կը շարունակուին այս քննութիւններն, ամէն աշնանամուտի, և վկայականք կը տրուին, և այժմ առանց վկայականի ուսուցիչ մնացած չէ գոնէ ի Կ. Պոլիս։ Սակայն արդիւնքն աւելի վատ եղած է։ Գործօն կենաց մէջ աշխատելու տրամադրութիւն չզգացող ու հազիւ նախակրթարանի ընթացքն լրացնող պատանիներ և ինքզինքնին ցուցադրելու մարմաջէն բռնուած թերուս աղջիկներ՝ շնորհիւ քննիչ յանձնախմբի մէջ իրենց ունեցած կամ ձեռք ձգած բարեկամաց պաշտպանութեան՝ կը խլեն վկայագիր մը ու հրապարակ կը նետուին, և այդ տափակութեամբ և շատ անգամ անխոստովանելի միջոցներով կը յաջողին՝ Տեսչի մը, Թաղ. Խորհրդոյ կամ Հոգաբարձութեան անդամի մը պաշտպանութիւնն ու համակրութիւնն վաստկելու պաշտօն մը ձեռք ձգել...։

Այսպիսի տափակներով ու միջակութիւններով լեցուածեն վարժարանները՝ ուստի և կարողներն ու իրենց հմտութեան վրայ հաւատք ունեցողներն՝ չկարենալով այս կարգի միջոցներու դիմել, և այդ միջակութեանց դէմ վճարքի նուազութեամբ մրցիլ՝ ստէպ ան-

պաշտօն կը մնան, և իբր հետևանք կը քաշուին այդ ասպարէզէն, որ հետզհետէ աւելի անկարողներու ու խեղճերու բաժին կը մնայ:

— Ուսուցչաց վճարքներն առհասարակ որ քանզօ-նուազելու վրայ են, իբրև ապացոյց կ'ընդօրինակե՛նք հետևեալն, Ներկայ տարւոյ «Մասիս» ի Ապրիլ 30 թիւէն, որ քաղուած է Ուսումն. խորհրդոյ Կ. Պոլսոյ վարժարանաց վիճակացոյց տախտակէն. «1897ին 3765 աշակերտներ յանձնուած էին ընդ ամէնն 199 երկսեռ ուսուցիչներու. իսկ 1905ի՝ 3632 ուսանողներն կը կրթուին ճիշտ 300 ուսուցիչներու ձեռքով..., մինչդեռ 199 երկսեռ ուսուցիչներու կը վճարուէր 1897ին 85,383 ղրշ... 83913 ղրշ. կը վճարուի 300 կրթական պաշտօնեաններուն՝ 1905ին» որով եթէ այդ բոլոր ծախսն ուսուցչաց վճարուած ըլլայ՝ իւրաքանչիւր պաշտօնեայ կ'ընդունի իրարու վրայ 280 ղրշ. կամ 58 ֆրանք: Կեդրոնական վարժարանի 118 աշակերտք հինգ դասարաններու բաժնուած՝ ունին 21 ուսուցիչներ, և ամսական ծախսն է 8687 ղր.:





## ԱԶԳ. ՄԱՄՈՒԼ

Մանօթէ արդէն Թուրքիոյ Մամուլի ենթարկուած խիստ գրաքննութիւնն. հոն ո՛չ միայն երկրի վիճակին վրայ ո՛և է քննադատական գրութեան հրատարակու-

թիւնն արգիլեալ է, այլ և երկրին մէջ կամ դուրսն տեղի ունեցած շատ մը դէպքեր՝ երբեք չեն ծանուցուիր և կամ կերպարանափոխեալ, ու միշտ երկիրն խաղաղ ու բարելաւ վիճակի մը մէջ ցուցնելու ճիգով մը կը ներկայացուին...։ Գալով հայ մամուլին որ գրեթէ միայն Կ. Պոլսոյ մէջ կեդրոնացած է՝ անկման շրջանի մը մէջ կը գտնուի. ո՛չ միայն ըստ ժամանակին պահանջին և տիրող քաղաքականութեան շատ մը դէպքեր պարտին կերպարանափոխեալ ներկայացնել, այլև ազգային կենաց մասին լուրերն կողմնակալութեամբ հաղորդելու, անհարկի գովեստներ ու պարսաւներ տալու դրութեան մէջ կը գտնուին ։ Աւստի և դժուարին է անոնց միջոցաւ իրաց ճշգրիտ վիճակին տեղեկանալ։

Լրագիրք և Հանդէսք երթալով կ'աճին և անոնց Մնայուն խմբագրութիւնն անբաւական է լեցնելու զանոնք, որով և հարկ է ճարել աշխատակիցներ՝ և աւելի կարելի եղածին չափ ձրի օժանդակներ. ուստի և խմբագիրք կը դիմեն գրիչ գործածողներու, փոյթ չէ թէ ըլլան միջակութիւններ, բաւական է որ թերթը լեցուի և այդ ձրի աշխատակիցներն ճարելու գլխաւոր միջոցն է անոնց մասին գովեստներ հրատարակել, զանոնք անուանել առաջնակարգ գրագէտ, բարձրաթռիչ բանաստեղծ, հմտալից, ևլն, ևլն. մանաւանդ եթէ կին են, զի ամէն թերթ ու հանդէս ունենալու է իր կին գրագէտ աշխատակիցն։ Այս գրողներն իրարու ձեռքէ կը խլուին, և որք լրագրաց հետ հաշտ ապրելու և պարբերաբար գնդասեղի հարուածոց չենթարկուելու համար ստիպեալ են կարգաւ գոհացում տալ անոնց։

Վա՜յ այն գրիչ գործածողներուն որ անոնց դիմումներուն անտարբեր կը մնան, ասոնք ստէպ քննադատութեանց ու հարուածներու ենթակայ կ'ըլլան։

Ազգ. ասպարէզի մէջ գործողները ստիպեալ են բոլոր թերթերու ու հանդէսներու բաժանորդ գրուիլ, եթէ յանդգնին զայնս մերժել իրենց բոլոր շարժումներն քննադատութեան առարկայ կ'ըլլան. իրենց իրագործած բարեգործութիւններն ու մատուցած ծառայութիւններն առ ոչինչ կը համարուին և հնարուածոց կ'ենթարկուին ։

Լրագրապետաց ու նոյն իսկ խմբագրաց և կամ ասոնց աշխատակցողաց հետ մասնաւորի մը ունեցած անձնական հաշիւներն ստէպ այդ թերթերուն մէջ քննադատութեանց ու արհամարհալից յօդուածոց նիւթ կը մատակարարեն։ Նշանախօսութեան, ամուսնութեան և մահուան առթիւ տեղի ունեցած երկարաձիգ, գրութիւններն, դրուատիքներն ու ջատագովութիւններն ու հանդէսից առթիւ մանրամասն նկարագրութիւններն մի կարծէք թէ ինքնաբերաբար և առանց ո՛և է ակնկալութեան գրուածներ են, ո՛չ, այդ ամէնը վճարուած են և վճարուելու մտօք գրուած, և անոնց փոխարինութեան գումարն՝ գործածուած ածականներու փայլին, թիւին, և գրութեան տողերուն համեմատական են ։ Անձ մը որչափ որ հարուստ ըլլայ՝ գովեստն այնչափ աւելի կ'ըլլայ, և մատուցած ծառայութիւնն այնչափ մեծ կը հռչակուի, ու կարողութիւնն՝ այնչափ բարձր։ Վա՜յ այն հայ հարուստին որ այդ գրութիւններն համեմատական կերպով չվարձատրեր, կամ լրագրաց

կողմանէ ղրկուած ստացագրերու փոխարէնը չհատու-
ցանեն: Շատ անգամ, ընդհակառակն, հազիւ թէ կը
ծանուցուին և կամ բոլորովին անյիշատակ կը թողուին
իրական արժանեաց տէր, պարկեշտ, կարող, հմտալից
անձնաւորութեանց նշանախօսութիւնը, կամ ամուսնու-
թիւնը կամ մահը, եթէ նա ի վիճակի չէ գոհացում
տալու արծաթասէր խմբագիրներու պահանջին:



## ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ՀԱՍՏԱՏՈՒԹԻՒՆՔ

Կ. Պօլիս ունի ընդ ամենն երկու բարեգործական հաստատութիւն. Ետիգուլէի Ս. Փ. Ազգ. Հիւանդանոցն և Խասգիւղի Գալֆաեան որբանոցն:

Ս. Փ. Հաստատութիւնն ո՛չ միայն Հիւանդանոց մ՚է, այլ և Յիմարանոց, Անկելանոց, Ծերանոց, Որբանոց, ունի և յարկ մը ուսանողաց յատուկ՝ ուր կը գիշերին ու իրենց սնունդն ու պէտքն կը ստանան անտէր ուսանողներ՝ որք մայրաքաղաքին բարձրագոյն վարժարաններն կը յաճախեն կամ արհեստ կ՚ուսանին: Ընդամենն 1000 պատսպարեալ (200 հիւանդ, 300 յիմար, 300 որբ, 150 ծեր ու անկեալ և 50 ուսանող են). և աւելի քան 100 պաշտօնեայ ունի: Այս հաստատութիւնն այժմ յանձնուած է գործօն Հոգաբարձութեան մը հսկողութեան. որ իրեն աջակից ունի Որբանոցի համար արանց Խնամակալութիւն մը և Հաստա-

տութեան առտնին պիտոյից հսկողութեան համար տիկնանց խնամակալութիւն մը։ Հոգաբարձութիւնն այս վերջին տարին մեծամած բարեկարգութիւններ իրագործեց աջակցութեամբ ու թելադրութեամբ իր բժշկապետին՝ Տոք. Տաղաւարեանի որ արդարև բարեկարգիչն եղաւ այդ Հաստատութեան՝ իր մանրամասն տեղեկագրերուն հրատարակութեամբ, կանոնագրութեան խմբագրութեամբ։

Հիւանդանոցի մէջ Ջրաբուժական սրահները, սննդոց բաշխման կառքերը, վերելակները, վիրաղարմանի խուցերը, ընթերցասրահները, խօսարանները և գեղազարդուած պարտէզները յիշեալ բժշկապետին օրով գոյացան այնպէս որ մեր Ազգ. Հաստատութիւնը Կ. Պոլսոյ Եւրոպական նմանօրինակ հաստատութեանց մակարդակը բարձրացաւ։ Դժբախտաբար վեց տարիներ ծառայելէ վերջ կառավարութեան պահանջին վրայ... հրաժարեցաւ բժշկապետը, մեծ ցաւ պատճառելով Հոգաբարձութեան և Որբանոցի խնամակալութեան։

Այս Հոգաբարձութեան օրով է որ մանչերու որբանոցն վերածուեցաւ Որբանոց Արհեստանոցի, ուր աշակերտք կ'ուսանին կօշկակարութիւն, կահագործութիւն, աթոռաշինութիւն, դերձակութիւն, թիթեղագործութիւն և ջուլհակութիւն։ Թերևս ապագային բացուի նաև երկաթագործութեան ճիւղ։ Աղջկանց որբանոցի մէջ կան կար, ձև և ասեղնագործութիւն։

Ի մօտոյ պիտի շինուին հիւանդանոցի յաւելուածական շէնքերն, որոց համար երեք նուիրատուներ

պատրաստ են արդէն 2000 ական ոսկի նուիրել։ Այս Հաստատութիւնը, որ պատուաբեր է Ազգին, տարեկան պիւտճէ ունի 13000 օսմ. ոսկի, այս գումարին մէկ չորրորդէն աւելին կ՚ընէ հացի և մսի ծախսն զոր Կայս. կառավարութիւնը կուտայ։ Եէտի Գուլէի Ազգ. Հաստատութեան տարեկան տեղեկագրէն կը համառօտեմ իր տարեկան ծախուց աղբիւրներն, անշուշտ կլորցընելով գումարներն ի դիւրութիւն ընթերցողին ըմբռնման։

| | Օսմ. Ոսկ. |
|---|---|
| Կալուածներէ եկամուտ | 1000 |
| Կառավարութեան հացի և մսի Նպաստն [1] | 3500 |
| Զանազան հաստատուն եկամուտ | 1500 |
| Մոմարան [2], սիկարի թուղթի և օրացոյցի հասոյթ [3] | 1000 |
| Փոխան ծաղկեպսակի և ծաղկեփնջի նուէրներ [4] | 1000 |

[1] Կայս. հացի ու մսի նպաստն այժմեանին կէսն էր առաջ, 7 տարիներէ ի վեր որբերու թուոյն անման առթիւ դիմում ըլլալով կրկնուեցաւ այս նպաստն։

[2] Հաստատութեան մէջ մոմարան մը կայ ուր կը պատրաստուին հարսանեաց և Կ. Պոլսոյ եկեղեցեաց յատուկ մոմերն աւելի քան կէս դարէ ի վեր։

[3] Հիւանդանոցի ի նպաստ սիկարի թուղթ մը, և պարզ ու ընդարձակ օրացոյցներ կը հրատարակուին։

[4] Շուրջ տասը տարիներէ ի վեր Գուրգէն էֆ.ի առաջարկին վրայ շատեր մեռելոց ծաղկեպսակ ղրկելու տեղ՝ Հիւանդանոցին դրամական նուէր մը կուտան, որ կ՚անուանուի «Փոխան ծաղկեպսակի»։ Աւելի ուշ՝ 1900էն սկսեալ հարսանեաց ծաղկեփունջերու փոխարէնն ալ սկսան Հիւանդանոցին տալ դրամական նուէրներ որ «Փոխան ծաղկեփունջի› կ՚ըսուի։

| | Օսմ. Ոսկ. |
|---|---|
| Տարեկան նուագահանդէս (5) | 1000 |
| Արձանագրութեան և նշանտուութեան (6) տուրքեր և պնակի ու գանձանակաց եկամուտ | 1000 |
| Պատսպարելոց թոշակ | 1000 |
| Նուիրատուութիւնք՝ | 2000 |
| Գումար | 13000 |

— Գալֆաեան աղջկանց որբանոցն՝ անկեալ վիճակ մ'ունէր Նրանուհի մայրապետի օրով. զի սա առանձինն մնացած էր իւր խնամոց յանձնեալ Որբանոցի բոլոր պէտքերն հոգալու։ Ասոր մահուանէ վերջ տիկնանց խնամակալութիւն մը կազմուեցաւ, Որբանոցի հոգն ստանձնելու համար, և հսկողութիւնն յանձնուեցաւ Քրիստինէ մայրապետին։ Այս խնամակալութիւնն հանգանակութեամբ վերաշինեց այդ Հաստատութիւնն, ծախսելով 1150 օսմ. ոսկի, ու անոր պիտոյից մատակարարութեան աղբիւրներ գտնել սկսաւ բարեսէր անձանց նուիրատուութեամբ, ու այսօր այդ հաստատութիւնն բաւական լաւ վիճակ մ'ունի։

Այժմ անդ կան 70 որբ սանուհիներ 5–18 տարեկան, ուր տարրական կրթութիւն մը կ'առնեն և

(5) Մի քանի տարիներէ ի վեր տարեկան նուագահանդէս մը կը տրուի ի նպաստ Հիւանդանոցի։

(6) Պատրիարքարանն կէս դարէ ի վեր ճանապարհորդաց անցագրի ծանուցաթուղթ տալու և նշանտուքի հրամանի առթիւ նպաստ մը կ'առնէ ի հաշիւ այս Հաստատութեան։

կը սովրին կար, ձև և ասեղնագործութիւն: Այս հաս-տատութեան տարեկան պիւտճէն է 900 օսմ. ոսկի: Եկամուտներն են իբր կալուածական հաստատուն՝ հա-սոյթ միայն տարեկան 55 օսմ. ոսկի: Նաև կառա-վարութենէն իբր նպաստ կ'ընդունի օրական 7 1/2 քիլօ միս, և 20 զոյգ «պէյլիկ» հաց, որք կ'արժեն տարեկան շուրջ 300 ոսկւոյ գումար մը. իսկ մնացեալն ազգային նուիրատուութեամբ կը հոգացուի:

Իշարս բարեգործական հաստատութեանց հարկ է յիշատակել «Աղքատախնամ մարմիններ»ն, որք գոյու-թիւն ունին մի քանի տարիներէ ի վեր, ամէն կարե-ւոր թաղերու մէջ: Ասոնց կազմութեան շարժառիթն է անշուշտ աղքատութեան օր քան զօր աճումն, որոց չկարենալով նպաստել Թաղ. Խորհուրդք խելացու-թիւնն ունեցած են կազմակերպել իրենց հովանւոյն տակ Աղքատախնամ մարմիններ՝ որք բաւական լաւ գործունէութիւն մը կ'ունենան:

Աղքատախնամք հիւանդաց բժշկական խնամք, դեղ ու սնունդ կը մատակարարեն, աղքատ ընտանեաց հաց ու միս կուտան և ձմեռնամուտին ածուխ: Գլխա-ւոր աղքատախնամ մարմիններն են Բերայինն, Գում-գաբուի և իր շրջակայ 3 թաղերունն (որք միացեալ չորս թաղեր կ'անուանուին), Սամաթիայինն, Օրթագիւ-ղինն ու Իւսկիւտարինն: Աղքատախնամներու պիւտճէն շատ համեստ է, սակայն եթէ այսպէս շարունակուին՝ հաւանականաբար կարևոր հաստատութեանց պիտի վե-րածուին: Բերայի Աղքատախնամն հիւանդապահութեանց դասընթացք մը հաստատած է և տարեկան 5—6 հի-ւանդապահներ կը հասցնէ:



## ՊԱՏՐԻԱՐՔՈՒԹԻՒՆ ԵՒ ՊԱՏՐԻԱՐՔԱԿԱՆ ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆ

*Հայ Ազգը շատ տագնապալի օրեր անցուց, հարուածներ ու հալածանքներ կրեց, սակայն երբէք՝ նոյնիսկ Իզմիրլեան պատրիարքի օրով, որ հայուն ամենածանր ճգնաժամն կրնայ համարուիլ՝ հայ Պատրիարքութիւնն և Պատրիարքական իշխանութիւնն չնուաստացան այս աստիճան: Նա պահպանեց Ազգ. իրաւասութիւններն, և պահել տուաւ Աթոռին արժանապատուութիւնն. իսկ այժմ ոչ միայն Երեսփոխանական ժողով գումարելու ու վարչական ժողովներն ընտրելու առանձնաշնորհութիւնն կորսնցուցած է՝ այլ և մասնական Կաթողիկոսաց ընտրութեան առթիւ՝ Ազգին ազատ գործունէութիւնն արգիլուած է, ու կառավարութեան ներկայացեալ Եպիսկոպոսաց ցանկի սրբագրեալ օրինակին վրայ միայն՝ վիճակներն կրնան ընել իրենց ընտրական քուէարկութիւնն՝ ինչպէս տեղի ունեցաւ Սսոյ Կաթողիկոսի ընտրութեան համար, և որ յետոյ՝ ըստ օրինի Ընդ. ժողովոյ բովէն անցնելու տեղ՝ կազմալուծեալ խառն ժողովոյ մը վաւերացման ենթարկուեցաւ միայն:*

*Ջնջուած է և եկեղեցականաց անքննարկելիութեան դարաւոր իրաւասութիւնը:*

*Որ և է կրօնաւոր առանց Պատրիարքարանի միջամտութեան՝ կը ձերբակալուի, դատարան կը հանուի, կը դատապարտուի ու կը բանտարկուի: Այս վերջերս*

անոնց երթևեկութիւնն ու ճամբորդութիւնն իսկ արգիլուած է։ Ծննդոց ու մահերու վկայգրերն՝ որք ցարդ թաղ. խորհուրդք կը ստորագրէին՝ այժմ այդ դերն «մխիթարներու» յանձնուած է։ Ընդհանրապէս որևէ խնդրոյ առթիւ Պատրիարքարանի վկայութիւնն ու յանձնարարութիւնն առ ոչինչ կը համարուի. ի մի բան Պատրիարքական ազդեցութիւնն իսպառ կորսուած է. և Հայու Պատրիարքն ու Պատրիարքութիւնն անուանական ու աննշան իշխանութիւն մըն. իր առաջարկներ չեն ընդունուիր, իր «թագրիր»ներ անպատասխանի կը մնան, իր խնդիրքներ կը մերժուին..., ու Պատրիարք Սրբազան անտարբեր է այս ամենուն մասին, և փոխան ուժգին բողոքելու, ազգային իրաւանց պաշտպան կանգնելու, Աթոռին արժանապատուութիւնն յարգել տալու, ու իր ժողովրդեան կրած զրկանաց և ենթարկեալ հալածանաց մասին դեղ ու դարման հոգալու, ի մի բան՝ փոխան հետևելու իր Նախորդներու օրինակին, և գործելու ըստ հանդիսաւոր ուխտին զոր Սահմանադրութեան մասին կատարեց առաջի Աստուծոյ և Ազգին՝ տարօրինակ ճկունութեամբ մը ամենայնի կը յարմարի... հազիւ կը կարդայ գաւառներէ եկած հալածանաց, կողոպուտներու և ջարդերու աղեկտուր նկարագրերն և օգնութեան աղերսներն. այդ ամէնը չափազանցեալ կը համարի և Բարձ. Դրան և Պալատական պահանջին համեմատ շնորհակալութեան և երախտագիտութեան ուղերձներ կը ստորագրէ, և կատարուած հալածանաց ու ջարդերու մասին իսկ՝ պաշտօնական հերքումներ կուտայ, և Եւրոպիոյ մէջ բողոքանաց

ձայն բարձրայնող հայերու բարոյական հեղինակութիւնը կը մերժէ, (անշուշտ լայնօրէն փոխարինուելով ամենայնիւ) ու այս ամէնը կը նկատէ և կ'արդարացընէ իբրև ժամանակի պահանջն ու իր դերն ծածկելու համար՝ յաչս ժողովրդեան մեծ գործունէութիւն կը ցուցնէ. շարժուն և երթևեկող վիճակ մ'ունի, շաբաթն քանի մ'անգամ Պալատ կ'երթայ, նախարարաց կ'այցելէ, թաղերն կը շրջի, ստէպ կը պատարագէ, առատ քարոզ կը խօսի, մեծատուններն կը խնկարկէ, օրացոյց կը շինէ, Աստուածաբանական յօդուածներ կը գրէ, մասնաւորաց գործոց կը միջամտէ, զինքն խընկարկողաց գործ, պաշտօն ու շքանշան տալ կուտայ: ինքն է նաև որ լրագրաց համար կը խմբագրէ ազգային լուրերը, որոնց մէջ կը կարդանք թէ՝ «30 նամակ կարդացած է, 22 ին պատասխանած է, Որբանոցի համար 25 ղրշ. հանգանակող այս ինչ վարժարանի սանուց օրհնութեան կոնդակ մը ղրկած է, այն ինչ անձին շքանշանն շնորհաւորելու այցելութեան գացած է, Տիկնանց այն ինչ խնամակալութեան ժողովին նախագահած է, այն ինչ ին այցելութիւնն ընդունած է և հետն Աստուածաբանական վէճ մ'ունեցած է, այնինչ տիկինն իրեն այցելութեան եկած է, թէ Հիւանդանոց երթալով որբերուն 20 օխայ շաքար բաշխած է, եւն. եւն» վերջապէս տիպար գործիչ մէ միշտ շարժուն և երթևեկող, ընելով ամէն ինչ իբաց առեալ... Պատրիարքութենէ ?

Գիտէք անշուշտ թէ մեզ Հայոցս համար ճանապարհորդութեան մեծ դժուարութիւններ կան, որով և մասնաւորապէս հայ վաճառականութիւնն մեծապէս կը կորսնցնէ: Ազ-

զին ստիպման վրայ Ս. Պատրիարքն քանիցս դիմում ըրած է այդ մասին և Թոյլտուութեան խոստում ստացած. սակայն երբէք չէ գործադրուած: Չէ գործադրուած նաև արկածեալ նահանգաց հայերու՝ ըստ Սուլթանի հրամանին՝ մի քանի տարուան զինուորական տրոց բաշխումն. որպէս նաև քաղաքական խնդրոց առթիւ բանտարկելոց ընդհանուր ներում շնորհուելու հրամանն: Այս և ասոնց նման կարգ մը խնդրոց մասին բազմիցս «Թագրիր»ներ գրուած, խոստումներ եղած ու չեն գործադրուած, ու ամէն անգամ որ Օրմանեան Սրբազան Ազգին պաշտպանօք ընդդիմացած է՝ Դրան և Պալատի կողմանէ սիրաշահուելով... լռած է: Ինչպէ՞ս կ'ուզէք որ ազդեցիկ ըլլայ Պատրիարքի մը բողոքն ու խնդիրքն ի նպաստ Ազգին՝ երբ նա շարունակ իրեն ու իրեններուն համար շնորհներ, պաշտօն, պատուաստիճան և պատուանշան կը մուրայ ու կ'ընդունի: «Անձ մը որ իրեն համար շնորհներ կ'ակնկալէ ուրիշի մը համար իր առաջարկներն չեն ընդունուիր» կ'ըսէ առածը:

Ազգին պահանջին վրայ Օրմանեան Սրբազան վերոյիշեալ խնդրոց մասին «Թագրիր» մը գրած ու ընդ հուպ գործադրութիւնն խնդրած է երկիցս, հակառակ պարագային հրաժարելու սպառնալիքով... ու վերջապէս հրաժարական ղրկելով տունն քաշուած մնացած է, մէկ երկու ամիս, բայց յետոյ՝ առանց իր խնդրանաց գոհացում ստանալու, անշուշտ սիրաշահուելով՝ վերսկըսած է Պատրիարքարան իջնալ, և երկու անգամն ալ տաճկական տօնական օրերու մօտ, որպէսզի կարենայ իր շնորհաւորական պարտքն կատարել յոտս Կայս. Գահոյից...:





## ՕՐՄԱՆԵԱՆ ՊԱՏՐԻԱՐՔԻ ԳՈՐԾՈՒՆԷՈՒԹԵԱՆ ԾՂԱՆԱԿԸ

Մինչև ցարդ հայ Պատրիարքունք տաղաւարներուն միայն պատարագ կ'ընէին, այցելելով կարևոր թաղերու եկեղեցիներն, քիչ անգամներ քարոզ խօսելով կը խրատէին ու հոգևորապէս կը մխիթարէին ժողովուրդն, և կ'ընդունէին թաղին նշանաւոր ազգայիններն և կամ Թաղ. Խորհրդոյ ատենապետին տունն՝ առանց երբէք գիշերելու անդ։ Այժմ այդ ամէն փոխուած է։ Օրմանեան սրբազան շատ ժողովրդական է, ընդհանրապէս Կ. Պոլսոյ 36 եկեղեցիներու 30 ը կ'այցելէ գոնէ անոնց տօներուն առթիւ, և ինքզինք հրաւիրել կուտայ ու կը պատարագէ։ Մնացած 6 եկեղեցեաց 5 ը լոկ մատուռներ են և աննշան, միայն թէ Գատը-գիւղի եկեղեցին հակառակ իր փափաքանաց ու ջանից և ի գործ դրած ուղղակի և անուղղակի միջոցներուն, երբէք չէ հրաւիրուած՝ ու չպիտի հրաւիրուի, քանի որ անդ կը գտնուին ազգային սովորութեանց նախանձախնդիր մի քանի հայեր՝ որք իրենց ազատ դրից հետևանօք չեն ուզեր համակերպիլ այս նորօրինակ պատրիարքի քմահաճոյից։

Օրմանեան Սրբազան տօներու նախորդ օրն կը հասնի հրաւիրեալ թաղն, կ'այցելէ նախ վարժարանն, ուր տափակ ուսուցիչներու միջոցաւ կանխաւ պատ-

ըստանել տրուած դրուատալից ուղերձներ կը կարդացուին ու իր անուան ձօնեալ երգեր կ'երգուին...: Կ'ընդունուի Թաղին մեծ աղային տունը, ուր կը գիշերէ հակառակ օրինաց և յաջորդ առաւօտուն պատարագի սկզբնաւորութենէն քիչ առաջ Եկեղեցի կը հասնի, կը պատարագէ ու կը քարոզէ: Իր տարեկան պատարագներու թիւն 50, իսկ քարոզներունն 100ն կ'անցնի: Այսպէս ստէպ պատարագելու ունակութիւնն հին սովորութենէ մը մնացած է. և այս ամէն ձևականէ առանց ըստ Եկեղեցւոյ պահանջին երկար պատրաստութեան և խոստովանութեան:

Յետ պատարագի ու ճաշի զինքն հիւրընկալող մեծ աղային հետ կ'այցելէ գիւղին կամ Թաղին բոլոր հարուստներն, որոց կը յաջորդեն ապա շրջակայից պտոյտներ. այսպէս ամէն Իւսկիւտար երթալուն մինչև Չամլըճային բարձունքն կ'ելնէ. Պէօյիւք տէրէ գտնուելուն՝ Չրերն, Պէնտէրն, Պօղազ Ֆէնէրին, Օթուզ պիր և նոյնիսկ Յուշա տէտէ, և այս ամէն այդ կեդրոններէ բաւական հեռի զբօսավայրերեն, և այսպէս ըստ պարագային օր մը, և կամ քանի մ'օրեր զբօսնելէ վերջ կը դառնայ 'ի Պատրիարքարան:

Թող ներուի ինձ Ն. Պօլսոյ հասարակութեան ծանօթ եղելութիւն մը համառօտակի պատմել աստ: Անգամ մը Իւսկիւտար կ'երթայ տօնի մ'առթիւ. Թաղ. Խորհուրդը արդէն սահմանած էր հիւրնկալ տունն, սակայն Սրբազանն իմանալով որ ... ներու տունն Թատերական խումբ մը եկած է, ուզեց անդ երթալ, ընկերացող վարդապետներու ցոյց տուած որևէ անյար-

մարութիւն ու պատրուակ չկրցին համոզել զայն. վերջապէս գնացին, ուր պատրիարքն Նախագահեց Թաթերականին խմբին սեղանին, խնամ ունենալով տարբեր սեղան մը յատկացնել տալ վարդապետներուն ըսելով թէ «դուք յամենայն ժամ ընդ իսէք»: Սեղանին վրայ գինւոյ գաւաթներով կենացներ իրարու կը յաջորդեն, գլուխներ կը տաքնան, Արբազանն՝ որ արդէն սկսած էր իտալերէն բարբառել, կը խնդրէ ներկայ դերասանուհիներէ մին (ամենէն շնորհալիէն անշուշտ) երգել. դերասանուհին կը մերժէ առանձինն երգել, հուսկ ուրեմն խմբովին կ'երգեն. սակայն Օրմանեան չգոհանար, կ'ուզէ այդ դերասանուհիին ձայնն առանձինն լսել, հնար մը կը գտնէ ու յաջորդ օրուան համար Զամլըճայի բարձունքը կը հրաւիրէ զանոնք, առաջարկը կ'ընդունուի և ժամադրութիւն կը դրուի: Նոյն օրն իսկ Օրմանեան Արբազան կ'այցելէ Թաղին մի հայազգի ճարտարապետին ու կ'առաջարկէ որ գինքը յաջորդ օրն Զամլճայ տանի, ու յաջորդ օրն կառքերն ուտեստներով ծանրաբեռնեալ ժամադրավայրն կը հասնին, ուր հասնի և Թատերական խումբն. անդ դալարի վրայ սեղան կը սարքուի, կենացներ իրարու կը յաջորդեն ու վերջապէս թոխմատօնաւ այդ երկնից կապոյտ կամարի տակ լսելի կ'ընէ իր հրեշտակային ձայնն՝ ու Օրմանեանի պռավօներու և պիզերու կ'արժանանայ. այսպէս զուարթ ցերեկոյթ մը անցնելէ ետք կը դառնան՝ լուսանկարներ փոխանակելու պայմանաւ, որ տեղի կ'ունենայ յաջորդ օրն իսկ. և քիչ օրէն ճարտարապետն կ'ընդունի երկրորդ աստիճանի մէճիտիէի պատուանշան:

*Պատրիարք Սրբազան տօնական օրերէ դուրս ալ կ՚այցելէ մեծատուններն և Զատկի ու Ծնունդի տօներէն քանի մ՚օր եր առաջ շնորհաւորական այցեքարտներ կը ղրկէ բոլոր աչքի զարնող ու պաշտօնական անձնաւորութեանց, առանց մոռնալու և անոնց տիկիններն, ստիպելու համար զանոնք որ այդ տօներու առթիւ պաշտօնապէս այցելեն զինքն. սակայն հակառակ այս ջանից Օրմանեան Սրբազան Պատրիարքարանի մէջ պաշտօնական շնորհաւորութիւններ ընդունելու օրն՝ հազիւ իր շուրջն մի քանի տասնեակ իրեն հլու հպատակ տափակներ կը գտնէ, մինչդեռ այլ Պատրիարքաց օրով և մանաւանդ Իզմիրլեան Սրբազանի Պատրիարքութեան ժամանակ՝ այնչափ ականաւոր ազգայնոց բազմութիւն կը խուժէ եղեր Պատրիարքարան՝ որ ըստ ժողովրդական ասութեան «ասեղ նետէ ձգուէր գետին չէր իյնար» ու կը վախցուի եղեր թէ Պատրիարքարանն կը փլչի։*

*Օրմանեան Սրբազան միայն չափահասներէ չէ որ այցելութիւն ընդունիլ կը փափաքի, այլ նաև դպրոցականներէն, ու ատ այդ ամէն Զատկական տօնէ ետք մասնաւոր օր մը դպրոցական տղայոց այցելութիւնն կ՚ընդունի, և անոնց տափակ վարժապետներու ու անոնց ձեռօք պատրաստուած տղայոց կողմանէ ղրուատալից ուղերձներ կը կարդացուին, երգեր կ՚երգուին ևլն։ Այս ընդունելութեանց օրն Պատրիարք Սրբազան միշտ խնամք կ՚ունենայ Բերայի Եսաեան վարժարանի բարձրագոյն կարգի աղջիկներն՝ որ Կ. Պոլսոյ ուսանողուհեաց ամէնէն երիցագոյններն են՝ մասնաւորապէս ընդունելու ...։*

Պատրիարք Սրբազանն կիներէ ալ այցելութիւն կը պահանջէ ու իր առաջարկին վրայ ոչ միայն Գալ-ֆայեան որբանոցի ու Ազգ. Հիւանդանոցի Տիկնանց խնամակալութիւնք կ'երթան իրեն՝ այլ և տնպաշտօ և իր ընդարձակ ծանօթութեան շրջանի մը մէջ գտնուող կանայք և օրիորդք։

— Օտարներէ ալ այցելութիւն մուրալու համար՝ Մաղաքեայ Սրբազան՝ անոնց որեւէ տօնական կամ տարեդարձի առիթն չփախցներ՝ անձամբ կամ իր ներկայացուցիչներու միջոցաւ շնորհաւորելու զանոնք, սակայն անոնք ստէպ միայն այցաքարտ մը կը ղրկեն։

Մեր վաղեմի պատրիարքներ պայրամի օրերն Պալատ կ'երթային ու ապա Բարձր. Դրան Եպարքոսին, Ներքին գործոց և Արդարութեան ու Կրօնից Նախարարներուն, սակայն այժմ Հայոց Պատրիարքն ոչ միայն բոլոր Նախարարներուն այցելութիւն կ'ընէ այլ տեսուչներու, գրասենեկից պետերու, և երկրորդական պաշտօնէից, որով զոր օրինակ՝ Գուրպան պայրամին չորս օրերն հազիւ կը բաւեն առաւօտէն մինչև երեկոյ այցելելու պայմանաւ, և այս ամէնուն փոխարէն մի միայն այցաքարտեր կ'ընդունի, զորս չմոռնար երբեք հրատարակել տալու։

«Մէվլուտ»ի խալիֆական տօնին առթիւ Կ. Պոլսոյ մէջ բարձրագոյն պաշտօնեայք միայն պալատ կ'երթան. սակայն ուրիշ այցելութիւն չկատարուիր, և պաշտօնատանց մէջ գործառնութիւնք կը շարունակուին։ Այս տարի Ս. Պատրիարքը «Մէվլուտ»ի օրն այցելութեան գնաց մեծ Եպարքոսին ու նախարարներուն և ընդհանուր քննադատութեան առիթ տուաւ։

— Օրմանեան Սրբազան իր անուան տարեդարձը, Հայ և օտար թերթերու միջոցաւ ծանուցանել կուտայ կանխաւ. և տօնին նախորդ օրն իսկ կը հրատարակուի թէ «Եկեղեցական և աշխարհական նշանաւոր Հայազգիներ և օտարազգիներ այցելութեան գացած են, որպէսզի այլք ալ տեղերը կարդալով՝ յաջորդ օրը իրենք ալ այցելութեան փութան։

— Հաստատելու համար թէ մեր Ս. Պատրիարքը ո՛րքան կ'ախորժի ցոյցերէ՝ օրինակ մը բերենք։ Ս. Պօղոս Լեթմէյտանլիի խեղճուկ Թաղը տարրական նախակրթարան մ'ունէր, որ մասնաւոր անունէ զուրկ էր և Թաղին անունովը կը յորջորջուէր։ Շէնքը հինցած ու խարխլած ըլլալուն՝ Թաղեցիք անոր նորոգութեան ծախսը հոգալու անկարող՝ դիմած էին Պատրիարքարան, խնդրելու որ վերանորոգութիւնը կատարուելու համար հանգանակութիւն մը բացուի։ Օրմանեան Սրբազան նպաստից Յանձնաժողովի սնտուկէն հոգալ տուաւ վերաշինութեան ծախսն, և այսպէս արժանացաւ Թաղեցւոց երախտագիտութեան։ Բայց նա այդչափովը չը գոհանալով. — ինչպէս որ կը հաւատեն — Վարժարանին Հօգաբարձութեան և ուսուցչին կը հասկցնէ որ ինք կը փափաքի աւելի օգտակար ըլլալ այդ Հաստատութեան, անոր ծախսին նպաստել և պարբերաբար այցելել, պայմանաւ որ այդ անանուն վարժարանն իր անուամբ կոչուի։ Առաջարկը կ'ընդունուի, և Պատիարք Սրբազանն յետ վերաշինութեան կ'այցելէ Նախակրթարանը, աշակերտաց կողմէ ուղերձներ և վարժապետին կողմէ դրուատալից ճառեր կը կարդացուին.

և պաշտօնատէն կը ծանուցուի թէ վարժարանն առ՚լէ վերջ «Մայաքեան» պիտի անուանուի, յանուն իր բարերարին, Մայաքեայ Սրբազան Պատրիարքին: Ժողովուրդը այս բոլորը յաջորդ օրն ազգ. թերթերու մէջ կը կարդայ ապշութեամբ: Զկարծուի թէ գոնէ անկէ վերջ Ն. Սրբազնութիւնը սկսած է անձնական քսակէն նպաստելու վարժարանին,— ո՛չ, այլ Նախակրթարանի ամսական 310 ղրշ. ի ծախուց համար Պատրիարքարանի և Մայր Եկեղեցւոյ սնտուկէն ամսական 140 ղրշ. նպաստ մը կը յատկացուի, և ծախուց մնացեալ մասը կը հոգացուի աշակերտաց վճարքներէն և գանձանակի հասոյթէն:

— Պատրիարք Սրբազանը Թաղերը այցելելու առթիւ տեղւոյն վարժարանին, Աղքատախնամին և Դպրաց դասուն փոքր նուէրներ կուտայ, բայց անոնց լրագրաց մէջ հրատարակումը կարծես թէ անհրաժեշտ պայման եղած է:

— Կրօնական խնդրոց մասին Օրմանեան Սրբազանի անտարբերութիւնը շատ ուշագրաւ է, և զայն ցուցնելու համար գրի կ՚առնեմ իրազեկ անձի մը պատմած հետևեալ իրողութիւնը:

Համբարձման տօնին՝ ըստ հնաւանդ սովորութեան՝ Ս. Պատրիարքը կը պատարագէ Ազգ. Հիւանդանոցի Մատուռին մէջ: 1900 ին, այդ տօնին նախորդ երեկոյեան՝ արդէն Հիւանդանոց եկած էր Օրմանեան Սրբազան իր հետևորդներով յաջորդ օրն պատարագելու համար: Գիշերն կ՚իմանայ թէ նոյն օրն Գալատան մէջ Թլփատութեան հանդէսի (սիւննէթ տիւյիւնի)ի առ-

Թիւ՝ ազգաց հոգևոր պետերն պիտի հրաւիրուին. ուստի առաւօտուն փութով մի ուրիշ եպիսկոպոսի կը յանձնարարէ պատարագել, և ինք կ՚երթայ Պալատ: Այն տեղ իրեն կ՚ըսուի թէ «Ցունաց Պատրիարքն՝ իրենց տօն ըլլալուն համար՝ խնդրած է որ ուրիշ օր մը գայ, ուստի իրենք ալ համակերպած են և հոգևոր պետերու հրաւէրը ուրիշ օրուան թողած. բայց, կը յաւելուն, դուք ալ քրիստոնեայ ըլլալով միևնոյն տօնը չ՚ունիք...»: Օրմանեան Սրբազան կը դառնայ Հիւանդանոց, կը հանէ սեղանէն, կը նախագահէ, և զարմալին այն է որ կը յանդգնի իրողութիւնն պատմել ամենուն ...: Ոմանք հետաքրքրութենէ մղեալ՝ հարցնելով կը տեղեկանան թէ Ցունաց Պատրիարքն այն օրը չէ պատարագած, այլ Համբարձման տօնը պատուելու և իր Հօտէն ու Եկեղեցիէն չբաժնուելու համար չէ գացած Պալատ, մինչդեռ մերինն՝ կարծելով թէ «տիշ քիրասի» կը տրուի Պատարագն ալ թողլով Պալատ վազած է:

— Կ. Պոլսոյ Պատրիարքներն բնակած են միշտ ի Պատրիարքարան կամ անոր մօտերը, միայն՝ Ներսէս Պատրիարք հիւանդութեանը համար օդասուն տեղ մը հաստատուեցաւ. սակայն ամէն պարագայի մէջ Պատրիարքներն չեն ունեցած իրենց յատուկ կառքն, զի քիչ անգամ կը հեռանային Պատրիարքարանէն, և պէտք եղած ատեն իրենց համար պատշաճ կառք մը կը վարձուէր: Օրմանեան Սրբազան իր Բերայի բնակարանէն դառնել չուզելով՝ առաջին օրէն իսկ ունեցաւ կառք մը ի հաշիւ Պատրիարքարանի, որուն համար

ամսական 18 ոսկւոյ ծախս մը ծանրացած է Պատրիարքարանի վտիտ պիւտճէին վրայ։

— Վստահելի անձեր կը հաւաստեն որ՝ Օրմանեան Սրբազան ժամանակաւ Հայ–Հռովմէականաց Պատրիարքարանէն իրեն հանգերձադրամ գլացուելուն համար դարձած է Ազգ. եկեղեցւոյ ծոցն, ու ապա միշտ դրամական անձկութիւն ունեցած է։ Շատեր կը յիշեն Թափթփուկ վերարկուով նորա վերելքը Ղալաթիայէն Բերա, ուստի շատ զարմանքով կը լսուի որ հիմայ աւելի քան 5000 ոսկի ունի։ Ոչ մէկ Պատրիարք կրցած չէ հաւաքելու այսչափ գումար. որ ամսական խնայողութենէ կամ աջահամբոյրներէ գոյացած չը կրնար ըլլալ։

«Մարդ իր պարագայներէն ու մտերմներէն կը ճանչցուի» կ'ըսէ առածն, ուստի Օրմանեան Սրբազանը աւելի մօտէն ճանչնալու համար՝ համառօտակի ներկայացնեմք իրեններուն խումբը։

— Պատրիարք Սրբազանի եղբայրն Տոք. Օրմանեան Կ. Պոլսոյ բժշկական վարժարանէն ելած խեղճուկ մը, որ դեղարանի մը վերնայարկն բժշկութիւն կ'ընէր՝ իր եղբօր շնորհիւ ոչ միայն արժանացած է պատուաստիճանի և պատուանշանի, այլ և պալատական բժիշկ անուանուելու, և Առողջապահական բարձր. ժողովոյ՝ անդամակցելու, և հաւանականաբար քիչ ժամանակէն փաշայութեան աստիճանն պիտի ընդունի։ Տոքթորին երբեմնի հոմանուհին և այժմու կինն Տիկին Շազիկ, որ իբր մաղեմի դերասանուհի ծանօթ է ամէնուն՝ արժանացած է «Շեֆագաթ»ի պատուանշանին։

— Ս. Պատրիարքի քեռայրն Մ. Տէր Ներսէսեան ապահովական ընկերութեան մը գնիչն է, և Պատրիարքի ազդեցութեամբ կ'ապահովագրէ վարժարաններն, եկեղեցականներն և Պատրիարքարանի պաշտօնէութիւնն։ Սա ալ արժանացած 'է շքանշանի։

— Քեռայրի եղբայրն՝ Նշանաւորն Տիգրան Տէր Ներսէսեան՝ որ երբեմն Կարնոյ մէջ բանադրուած ու Եկեղեցւոյ հաղորդակցութենէ զրկուած է՝ իր ազգավնաս շահատակութեանց պատճառաւ, և որ Կ. Պոլիս գալով սեղանաւորի միջնորդութիւն կ'ընէր միշտ պարտքի մէջ խեղդուած՝ հիմայ Ս. Պատրիարքի շնորհիւ Քաղաք. ժողովոյ անդամ եղաւ, Ազգ. Պատրիարքարանի գործակատար անուանուեցաւ, նախ միայն 10 ոսկի և ապա 20, 30 ոսկի ամսական ստանալով։ Բաց ասկէ առանց մասնաւորներէ վճարուելու՝ անոնց մասին միջամտութիւն չէր ըներ, նոյնիսկ առաջնորդական պէրաթի մը համար գոնէ 20 ոսկի կը պահանջէր ընտրեալ առաջնորդներէն։ Տ. Տէր Ներսէսեան «Տարեգրելոց Յանձնաժողովոյ» անդամ ըլլալով՝ այդ խեղճ վտարեալներուն ինչքերով գոյացեալ գումարէն մեծապէս օգտուեցաւ... ան։ Վերջապէս ժողովրդեան և նոյնիսկ Թուրքերու բողոքն այս անխիղճ անձի շահատակութեանց մասին այնչափ սաստկացաւ՝ որ Քաղ. ժողովն ստիպուեցաւ անոր գործակատարութենէ հեռացումը պահանջել, սակայն նա դեռ կը շարունակէ մնալ Քաղ. ժողովոյ անդամ, և Ս. Պատրիարքի դիմումներուն շնորհիւ՝ եղած է Քաղաքապետական ժողովոյ անդամ, ընդունած է-ուշայի աստիճանն, և Օս-

մանիյէ և Մէճիտիյէի Բ. աստիճանի պատուանշաններն։

— Պատրիարքի քոյրերէ մին զոր Հռովմէական վարդապետ մ'առնելով Եգիպտոս տարաւ ու անդ ամուսնացաւ, քանի մը տարի առաջ Կ. Պոլիս գալով արժանացաւ պատուանշանի . . . ու իր այդ կարգաթող փեսան իրեն թղթակից գործատարն է յԵգիպտոս։

— Օրմանեան Սրբազանի ամենէն մտերիմն է Ռուպէն էֆ. անուն անձն որոյ գոյութիւնն ու հայ ըլլալն իսկ ծանօթ չէր մինչև վերջին տարիներն. Ռուպէն էֆ. Պատրիարքի ի վաղուց ծանօթ կնոջ մը հոմանին ըլլալու բաղդն ունեցած է։ Նորին Սրբազնութիւնն է որ այդ անձը յանկարծ բարձրացուցած է աննշան դիրքէն և մինչև անգամ զայն ու անոր անպատակ կինն ներկայացուցած է պալատան առաջին քարտուղարին, և Նորին Վսեմութեան համակրութիւնն վաստկցուցած է, ու Ռուպէն էֆ. եղած է Պատրիարք Սրբազանի և առաջին քարտուղարի միջև երթևեկ մը, արժանացած է աստիճանաց և շքանշաններու, վերջապէս Պատրիարք Սրբազանի սախպման վրայ Ռուպէն էֆ. պսակուած է իր հոմանուհւոյն հետ, որոյ պսակադիրն եղած է ինքն, ու կնքահայր իր եղբայրն Տոք. Օրմանեան։ Ապա Ռուպէն էֆ. եղած է վիճակագրութեան (սթաթիսթիք) գրասենեկի փոխ-Տնօրէն, և ի վերջոյ Տնօրէն, ու այժմ հազիւ թէ ամիսը մի անգամ կ'երթայ, զի արդէն վիճակագրութիւնն իսկ անուանական գոյութիւն ունի ի Թուրքիայ։ Ռուպէն էֆ. այժմ եղած է անձնաւորութիւն մը և արժանացած է Պալայի, աստիճանին, Մէճիտիյէի և Օսմանիյէի առաջին շքանշաններուն, և կինն Շէֆագաթի պատուանշանին։ Ռուպէն էֆ. այժմ Պատրիարք Սրբազանի

կողմանէ կարգուած է Ատենապետ Բերայի Թաղ. Խորհրդոյ, որոյ անուանման հետեւանօք անդամներէն միքանիին քաշուած են գործէ: Բօսֆէռ էֆ. անդամ է նաեւ Բերայի վարժարանաց Հոգաբարձութեան մարմնոյն և շատ մը մասնախումբերու :

— Կրօնաւորաց դասակարգէն Պատրիարքի ամենէն սիրելին է Բաբկէն Վարդապետ, որ Սամսոնի Առաջնորդութենէն զատըելէ ետք՝ Մուշի Առաջնորդ եղաւ, ու այդ առթիւ ի մէջ այլոց նշանաւոր հանդիսացաւ կարօտելոց համար գրկուած գումարէն 160 ոսկւոյ իւրացմամբ: Այս զեղծման առթիւ մեծ աղմուկ եղած է ի Կ. Պոլիս. Ս. Պատրիարքն փոխանակ թոյլ տալու որ խնդիրն օրինաւորապէս քննուի և արդարութիւնը պարզուի, անտեղի պաշտպանութիւններ փորձեց, և նոյն իսկ պաշտօնապէս Դիւան միջոցաւ արգիլել տուաւ անոր մասին լրագրաց մէջ երեցած քննադատութեանց շարունակութիւնն, որով աւելի ևս վնասեց իր ձեռնասուն աշակերտի համբաւին: Կ. Պոլսոյ մէջ անոր գործ գտնելու համար փորձեց քարոզիչ անուանել քանի մը թաղեր, յամենուստ վտարուեցաւ թաղեցիներէ, և վերջապէս Ղալաթիոյ Նիկողեցւոյն քարոզիչ կարգել տուաւ. զի անդ Թաղ. Խորհուրդ չկայ, ու Խնամակալութեան անդամներն իր մարդիքն են. փորձէց կարգել Կեդրոնական վարժարանի կրօնի ուսուցիչ բայց չյաջողեցաւ: Ասկէ զատ նա Ազգ. Մատենադարանի պետն է ու «Լոյս» կրօնական հանդէսի խմբագիրը, և իր վարժապետին կրթուած կ՚աճեցնէ իր դրամներն և անշուշտ ապագային պիտի արժանանայ կարևոր վիճակի մը առաջնոր-

դութեան երբ ժողովուրդն մոռնայ իր շահատակութիւններն։

— Պատրիարքարանի պաշտօնէութենէն Օրմանեան Սրբազանի ամենասիրելին է Մ. Զօպանեան էֆ. Ելեմտից Տեսուչն, զի սա Պատրիարքարանի սնտուկն Պատրիարք Սրբազանի և իրեններուն տրամադրութեան տակ դրած է, և ասոր փոխարէն՝ արժանացած է պատուանշանի և ամսականի յաւելման։ Այս պաշտօնեան շաբաթն հազիւ 2-3 անգամ Պատրիարքարան կուգայ, միայն երկու ժամ մնալու համար, զի իր պաշտօնին արդէն պէտք ալ չկայ, և Տնտեսական Խորհրդոյ կողմանէ այս պաշտօնէութեան ջնջման մասին եղած առաջարկութեանց հակառակ՝ դեռ կը պահուի ինչու որ, կ՚ըսեն թէ, Զօպանեան կրնայ երևան հանել շատ մը զեղծումներ որոց գաղտնապահն է...։ Ելեմտից տեսուչն իր 25 ոսկի ամսականին հաւասար գումար մ՚ալ կը վաստկի՝ Պատրիարքարանի պաշտօնէից ամսականները վճարման օրերէն առաջ տոկոսի զեղչով իր անձնական դրամէն վճարելով, և իր տրամադրութեան տակ գտնուած այլևայլ գումարները շահագործելով։

— Բազ. Ժողովոյ անդամներէն Ս. Պատրիարքի գլխաւոր զօրավիգն է Տիգրան էֆ. Եուսուֆեան, Ատենապետն, որ ատրճաններու և շքանշաններու արժանացած է, և ի փոխարէն ջերմապէս կը պաշտպանէ Ն. Սրբազնութիւնը, և Զատկի ու Ծնունդի պաշտօնական ընդունելութեանց օրերն՝ դրուատալից ուղերձներ կը խօսի յանուն Ազգին և մինչև Երկինք կը բարձրացնէ Օրմանեան Սրբազանը։

Ուսումնական խորհուրդէն իր սիրելի հլու հպա-տակներն են Յօզ. Թորգոմեան և Հրանդ Ասատուր։

— Ղալաթիոյ Էկեղեցւոյ խնամակալութենէն իրեն համակիր են Յակոբ էֆ. Էսաեան, մեծամիտ և անուս անձ մը, որ Ատենապետն է այդ խնամակալութեան, և Հրանդ էֆ. Ասատուր՝ հին վարժապետները յիշեցնող տիպար մը՝ որ փաղաքշանօք արժանացած է կեդ. Վար-ժարանի մէջ դասատուութեան։ Երկուքն ալ արժանա-նացած են պատուանշանի։ Ուսուցչաց խմբէն շատ են իրեն երկրպագուներն, որոց գլխաւորն է Ռ. Պէրպէրեան, և որ ի վարձ իւր այս հլու հպատակութեան իր վար-ժարանի 25 ամեայ տարեդարձ մը սարքելով անոր 1000 ոսկի վաստկցուցած է և շքանշան տնկել տուած է։

— Երկար կ՚ըլլայ թուել Օրմանեան Սրբազանի երկրպագու երկրորդական անձնաւորութիւններն, ուստի պահ մ՚ալ քննեմք իր ներքին կեանքը։ Պատրիարք Սրբա-զանի տան մէջ ընդհանրապէս թուրքերէն կը խօսուի, իր ամուրի քոյրն հազիւ կը հասկնայ հայերէն, վեր-ջապէս թուրքերէնն է մտերմութեան լեզուն. մնացորդ հինաւուրց սովորութեան։ Օրմանեան Սրբազանի տան մուտքն ազատ է, անդ կը տեսնուին երկրորդական մարդիկ և իրենններն։ Հինգշաբթի երեկոյները մասնա-ւորապէս ընդունելութեան սահմանուած է, մտերիմները շատ անգամ աւելի կանուխ ճաշի կուգան, և եթէ ի-րենք չկրնան՝ կիներնին զիրենք կը կանխեն. Ներ-կայ կը գտնուին օղիով ախորժակներն սրելու արա-րողութեանց. յետ ճաշի նաւագ մտերիմներն կը հասնին

ու զբօսանքն կը շարունակուի մինչև կէս գիշեր և աս ամէն հինգշաբթի, երբեմն ուրիշ օրեր ալ...: Արքայն զբօսնու... ինչ կ'ըսեմ «Վարդապետն զբօսնու»:

— Հայ Հասարակութիւնը Պատրիարքի այս ընթացից հանդէպ՝ խորապէս վշտացած է և զանազան առիթներու մէջ արտայայտած է իր զգացումը. սակայն չհամարձակիր բարձրաձայն բողոքելու, որով և ամենէ կարող, զգայուն ու ազգասէր անձնաւորութիւնք քաշուած են գործունէութենէ, և հրապարակը թողած է տափակներու ու համակերպողներու: Եթէ Երեսփոխանական Ժողովը գումարուէր՝ անշուշտ առաջին գործը պիտի ըլլար Օրմանեան Սրբազանի հրաժարականը պահանջել: Քանի մը տարիներ առաջ Ժողովրդեան զաւակ մը հանրութեան իղձն իրագործել ուզեց սպանման փորձով, սակայն դժբաղդաբար չյաջողեցաւ և ո՛չ միայն ինք այժմ բանտնէ և մինչ ցվերջ կենալու դատապարտեալ, այլ և իր եղբայրն, որ դեսպանական միջամտութեան շնորհիւ միայն կարելի եղած է ազատել բանտէն հակառակ Պատրիարք Սրբազանի պահանջից և միշտ ընդ հսկողութեամբ կը մնայ:

— Ազգայինք ընդհանրապէս Օրմանեան Սրբազանը «Կաթոլիկ Պատրիարք» կ'անուանեն, իսկ Ազգ. Հիւանդանոցի շրջանակին մէջ «Ծաքարարաբաշխ Պատրիարք»: Թող չկարծուի թէ՝ իր թրքամոլ ընթացքովը սիրուած է Թուրք տարրէն, ո՛չ, անոնք ալ իրական արժէք մը չեն ընծայեր անոր: Սուլթանն կ'ուզէ զայն միշտ պահել իր աթոռին վրայ, զի վստահ է թէ ուրիշ ո՛րևէ հայ կրօնաւոր՝ նուազ համակերպող, նուազ

հլու հպատակ պիտի ըլլայ քան Օրմանեան Սրբազանն։ Պալատին մէջ իր շարունակական և երբեմն անտեղի սուրհանդակի նման երթևեկին համար զայն «Էրմէնի-լէրին Թաթար փաթրիկի» կ'անուանեն, աւագանիք և նախարարք զօրս իր աննպատակ այցելութիւններով կը ձանձրացնէ՝ անոր ճկուն համակերպութիւնն մատնացոյց ընելու համար «Էրմէնիլէրին ճիզուիդ փաթրիկի» կ'ըսեն։ Եւրոպացիներն ալ չեն համակրիր իրեն ու «Հայոց Թրքամոլ Պատրիարքը» կոչած են զինքը։

— Օրմանեան Սրբազան անտեղեակ չէ իր դէմ եղած ընդհանուր հակակրութենէն, և այս պատճառաւ իսկ աւելի ևս կը ջանայ իր շողոքորթ ու ճկուն ընթացքով շահաւիրել ամենն, սակայն այս միջոցն պարզամիտներու առջև միայն կը յաջողի, և ընդհակառակն խելացի և անկեղծ ազգայինք աւելի կ'արհամարհեն այդ ուղղութիւնն։ Կ. Պոլսոյ մէջ գտնուած ատենս օր մը Պատրիարք Սրբազանի քննադատական խօսակցութեան մ'առթիւ զգայուն հայազգի մը կ'ըսէր «Աստուած Եգիպտացւոց շատ մը պատուհասներ տուաւ որպէսզի ստիպուին ազատ թողուլ Եբրայեցիները, անոնք մերժեցին բայց տասներորդ պատուհասին առջև տեղի տուին։ Այսպէս ալ Աստուած Հայոցս շատ մը պատուհասներ տալէ վերջ իբր վերջինն Օրմանեանն տուաւ»։





## ԵԿԵՂԵՑԱԿԱՆ ԴԱՍԱԿԱՐԳՆ

Կ. Պոլսոյ մէջ կը գտնուին այժմ իբր 10 Եպիսկոպոսներ— Մ. Օրմանեան, Գ. Ճէվահիրճեան, Գրիգորիոս Յովհաննէսեան, Վահրամ Մանկունի, Գ. Սրբեցեան, Բարթողիմէոս Չամչեան, Հմայակ Դիմաքսեան, Մկրտիչ Վեհապետեան, Մեսրոպ Սուքիասեան, Տիմոթէոս Սափրիչեան: Ասոնց երեքն բաւ պիտի ըլլային, մին՝ իբր Պատրիարք, մին՝ Դրան Եպիսկոպոս և Կրօն. Ժողովոյ Ատենապետ, և միւսն՝ Երուսաղեմայ փոխանորդ, Մնացեալ եօթն՝ մայրաքաղաքի մէջ աւելորդ են և կարևոր ծառայութիւններ կրնային մատուցանել անհովիւ վիճակաց մէջ. սակայն ասոնց երկուքն, Գրիգորիոս և Վահրամ՝ Էջմիածնի միաբան՝ անդ հալածուած... և վտարուելով աստ եկած են վայելելու իրենց... քրտանց արդիւնքն, և երբէք չեն ընդունած ու չեն ընդունիր առաջնորդական որևէ պաշտօն: Երկուքն Բարթողիմէոս և Մեսրոպ՝ իրենց վիճակի ժողովուրդներէն մերժուած՝ Ազգի աչքէն ինկած իբր Թրքամոլ, Սուլթանին կողմէ յատկացուած ամսականն առնելով անուշ անուշ կ'անցնեն իրենց օրերն: Վեհապետեանն Կառավարութեան հրամանով փակուած է աստ: և եթէ անոր մասին Սսոյ Կաթողիկոսին և Կ. Պոլսոյ Պատրիարքին կողմէ ջանքեր ըլլային՝ կրնար երթալ ի Կիլիկեայ՝ և հոն մեծ ծառայութիւններ մատուցանել, շնորհիւ իր ճարպիկ ու գործոն յատկութեանց:

Հմայեակ Օրբազան մէկ անգամ միայն գաւառ (Երզնկա) գացած է, և եպիսկոպոսանալու պայմանաւ, Ժողովուրդն ու Պատրիարքարան յարգած են իրենց խօստումը, ու եպիսկոպոսական վկայագիր տուած են, սակայն նա Էջմիածնէ վերադարձին հաստատուած է ի Կ. Պոլիս, ու այլևս մնացած է տեղը: Նա չշարժիր քանի որ անքակտելի փափուկ կապերով կապուած է անդ, և Բերայի բազմահայ ու ճոխ թաղի քարոզչութիւնը այնչափ արդիւնաբեր է: Գ. Երիցեան Սրբազան եղած է սալոնի եպիսկոպոս, չուզեց մայրաքաղաքը թողուլ մինչև իսկ Սսոյ Կաթողիկոսական աթոռը բարձրանալու համար, արհամարհելով Ազգին ձայնն: Կ'երևայ թէ աւելի զօրաւոր ձայներ ու կապեր անոր Կ. Պոլիս մնալն կը պահանջէին...:

Տիմոթէոս Եպիսկոպոս Սափրիչեան յայտնի է իր Հապէշիստան ըրած ուղևորութեամբը. այժմ ծեր և գործելու անկարող վիճակի մէջ է: Սա Երուսաղիմայ Ս. Յակոբայ միաբանութեան անդամ՝ անդ պարտ էր անցնել իր վերջին օրերն:

Ո՞ր օրէնք կը թոյլատրէ որ 7–8 անպաշտօն եպիսկոպոսներ՝ եկեղեցւոյ իշխաններ՝ գան յղփանալ Վոսփորի գեղածիծաղ ափանց վրայ, մինչ անդին Վանայ, Մշոյ, Ա. Պոլսոյ, Պուլկարիոյ, Ռումանիոյ, և Եգիպտոսի առաջնորդական աթոռները թափուր կը մնան:

Մեսրոպ և Բարթողիմէոս Եպիսկոպոսներն ի նշան երախտագիտութեան, իսկ Հմայեակ Սրբազան անոնց դասակից ըլլալու բաղձանօք՝ Պայրամի առթիւ Կ. Պալատ

կ՚երթան իրենց շնորհաւորութիւններն մատուցանելու, բան մը որ երբէք տեսնուած չէ ուրիշ տեղ, զի միայն ազգին Պատրիարքն է որ պարտի երթալ յանուն Ազգին շնորհաւորութիւններ մատուցանելու ։ Նիկոմիդիոյ առաջնորդ Ստեփանոս Եպիսկոպոսն իսկ՝ երբեմն իր վիճակէն կուգայ այդ առթիւ ։

Մայրաքաղաքին մէջ կան իբր 15 Վարդապետներ որոնց միայն երեքը բաւ պիտի ըլլային անդ՝ լուր օրերն իբր․ Պատրիարքարանի պաշտօնեայ և տօն օրերն Պատրիարքին կողմէ շրջուն քարոզիչ։ Այո՛, Պատրիարքն, Դուրեան Եպիսկոպոսն, Երուսաղեմայ փոխանորդն և երեք վարդապետներ ընդ ամէնն վեց կուսակրօն եկեղեցականներ՝ բաւական պիտի ըլլային իբր քարոզիչներ Կ. Պոլսոյ Հայ հասարակութեան ։ Այդ վարդապետաց խմբէն երեք չորսը միայն ինչ ինչ պատճառներով չեն կրնար գաւառ երթալ, իսկ միւսներն կամ անկարող են առաջնորդական վիճակ մը կառավարելու և կամ չեն կրնար թողուլ Կ. Պոլսոյ հրապոյրները։ Այս վերջին կարգին վերաբերողներէն՝ յիշեմք Վահան Վրդ. Ցանկօրեան, որ շնորհիւ իր ճարպիկութեան բաւական կալուածոց տէր եղած է Կ. Պոլսոյ մէջ և մանաւոր Տիկնանց . . . խնամածութիւնը կը սիրէ։ Սա ունի շատ մը շահատակութիւններ որոնց գլխաւորն ու վերջինն տեղի ունեցած է Պուլկարիոյ մէջ, ուր ղրկուած էր իբր Պատրիարքական փոխանորդ առաջնորդի ընտրութեան համար։ Նա չարաչար աշխատեցաւ զինքն ընտրել տալու համար՝ սակայն հակառակ իր ջանից երբ տեսաւ թէ՝ Ներսէս Եպիսկոպոս

Ալլահեան քուէից բացարձակ առաւելութիւն ունեցաւ՝ մեծ յուզումներ հանեց և տեղւոյն Օսմ. կառավարութեան ներկայացուցիչին ծանոյց թէ՝ այդ ընտրեալն յեղափոխական է, իսկ ինք՝ ստիպուեցաւ Պուլկարիայէն գիշերանց փախչիլ, և Կ. Պոլիս առնել իր շունչն։

Պատրիարքարանն հակառակ իր ջանից՝ չկարողացաւ Ազգին ընտրելին Պուլկարիա ղրկել, ուստի... հարկադրուեցաւ զայն Տրապիզոնի առաջնորդ ընտրել տալ։ Ինձ հաւաստուեցաւ թէ՝ նոյնիսկ կառավարութեան կողմանէ Կ. Պոլսոյ մէջ մնալու դատապարտուած վարդապետներն եթէ իրենք ուզեն՝ դիւրութեամբ կարելի է իրենց մասին տրուած որոշումն փոխել տալ. սակայն անոնք կը սիրեն այդ պատրուակաւ մնալ Կ. Պոլիս, վայելել սալոններու փափուկ կեանքն և իբր գրկեալներ իրենց վրայ հրաւիրել տիկնանց գութն... անոնց խնամածութեան առարկայ դառնալ և քսակնին պարարել։

Լաւ չըլլար միթէ այս առաջնորդութեան անկարողներն՝ վանքերը ղրկուին, իսկ կարողներն՝ Պատրիարքարանի կողմանէ ստիպուին երթալ թափուր վիճակներն. հովուելու. և եթէ չհամակերպին ղրկուին խալման Կ. Պոլսոյ Եկեղեցեաց մէջ քարոզչութիւն ընելու հանգստաւէտ պաշտօնէն։ Այժմ անոնց իւրաքանչիւրն մասնաւոր ընտանիքի մը՝ կամ ընտանիքներու պաշտպանութիւնն կը վայելեն, ու իրենց պարապոյ ժամերն սալոն սրահներու մէջ կ՚անցունեն փափկասուն Տիկնանց... Աստուածաբանական դասեր տալով։ Ամօթ է՝ այս ամէնն և երբէք պատուաբեր չէ։ Հայ եկեղեցա-

կանոն ցարդ սրբակրօն համարուած և Օտարաց իսկ դրուատանաց արժանացած էր, ինչո՞ւ այսօր կորսնցնէ այդ պատիւը, և ինչո՞ւ վարդապետ մը բնակի տուներու մէջ, ընտանեաց մէջ: Վարդապետն պարտի ըլլալ վանուց մէջ և կամ Եկեղեցւոյ խուցն, հեռի ընտանիքներէ. այդ է եկեղեցւոյ օրէնքն, պէտք է որ կամ համակերպին և կամ թողուն իրենց սքեմն և հեռանան եկեղեցւոյ կուսակրօն պաշտօնէութենէն: Սակայն դժբաղդաբար օրինակն բարձրերէն կուգայ...:

Կուսակրօն եկեղեցականութիւնն մեծապէս կը վնասէ քահանայական դասին: Անոնք խմբովին ներկայ կը գտնուին մեռելաթաղի, հարսանեաց և մկրտութեան արարողութեանց. իրենք են որ կը խօսին դամբանական, հարսանեկան խրատ և մկրտութեան օրհնութիւն, և անշուշտ այնչափ աւելի ճոխ ածականներ գործածելով ու դրուատիքներ հիւսելով՝ որչափ հարուստ է ննջեցեալն, ամուսնացողի կամ մկրտուողի ծնողքն և այս ամէնը համեմատական է վճարքի գումարին: Դամբանականներն աւելի արդիւնաբեր են: Լսեցի աննշան անձանց և նոյնիսկ կիներու մասին այնպիսի դրուատիքներ ու գովեստներ որ հազիւ վայել է շռայլել ազգօգուտ մեծ բարերարներու համար: Տարին անգամ մը Եկեղեցի չգացողներն կ'անուանեն՝ բարեպաշտ, աղքատ վռնտողներն՝ աղքատասէր, Ազգային գործոց մասին անտարբերներն՝ կարևոր գործիչ, տգէտներն՝ խելացի, խարդախ շահադէտներն՝ պատուաւոր վաճառական կամ սեղանաւոր, անբարոյականներն՝ առաքինի... ո՞ր մէկն թուեմ, և այս ամէն յանուն Եկեղեցւոյ, Եկեղեցւոյ բե-

մէջն և Եկեղեցւոյ բարձրաստիճան պաշտօնէից կողմանէ..., ու անդին խեղճ ռամկայն պարկեշտ անձնաւորութիւն մը՝ որ անթերի կատարած է իր պարտքն իբր մարդ, իբր հայ ու իբր քաղաքացի, որ իր պարկեշտութեան հետեւանօք չէ հարստացած, ու հազիւ աժան գնով թաղման մը կ'արժանանայ, Եկեղեցւոյ պաշտօնէին կողմանէ գոնէ իբր այր պարկեշտ չվկայուիր ։

Դուստակրօն քարոզիչներն ստէպ տէրունական օրերուն շնորհաւորութեան կը շրջին իրենց թաղի հարուստներուն տուները, և տուն օրհնող քահանայից նման և աւելի առատօրէն կը վարձատրուին։ Քարոզիչ Եպիսկոպոս մը Զատկի երեք օրերն առաւօտէն մինչև երեկոյ կառքով՝ քիչ շատ կարողութիւն ունեցողներու տուներն շրջան կ'ընէ, և բաւական պատկառելի գումար մը կը հաւաքէ, որոյ արդարև պէտք ունի իր բազմանդամ... ընտանեաց ծախուց համար։

Նորելուկ վարդապետներն իրենց պարապի ժամերն մերթ յօդուածագրութեամբ կ'անցունեն, որով թէ այդ թերթերու մէջ կը փառաբանուին և թէ՛ իրենց գրչի կարողութիւնն, ու բանաստեղծի թռիչն ի յայտ կը բերեն, և իրենց համակիր ընտանիքներն աւելի եւս կը դիւթեն։ Քահանայից դասին մէջ շատ քիչեր կան իրենց պաշտօնի նուիրականութեան գիտակից և իրապէս արժանաւորներ՝ ասոնց մեծամասնութիւնը քահանայութիւնն իբր դրամ վաստկելու սոսկ արհեստ մը կը նկատեն, ու ըստ այնմ ամէն ճարպիկութիւն ու անուղղակի միջոցներ ի գործ կը դնեն, կարելի եղածին չափ արդիւնաւոր կերպով շահագործելու համար ժո-

ժողովուրդն։ Ընդհանրապէս փախուստ կուտան աղքատի մանուկ կնքելէ, կամ մեռելն թաղելէ. ու եթէ հարկադրուին իսկ՝ անճպարարի հապճէպն կը ընեն, մի քանի վայրկեանէն ամէն ինչ լրացնելու համար. իսկ ընդհակառակն հարուստներու համար առանց հրաւէրի կը հասնին ու արարողութեանց կը մասնակցին։ Տնօրհնէքի համար միայն՝ աղքատներու տուներն կ'այցելեն, իսկ հարուստներու համար որևէ առիթ չեն փախցներ, որպէս տօնական ու անուան շնորհաւորութիւնները և գործի մը յաջողութեան ու պաշտօնի մը կամ աստիճանի մը հասնելու առիթները։

Կանանց խոստովանանքն միշտ տուներն կ'ըլլան, մանաւանդ հարուստներունը. զի այս աւելի արդիւնաւոր է, և մի՛ զարմանաք եթէ լսէք թէ՝ քիչ ատենէն Հաղորդութիւնն ալ տուները պիտի տարուին քաջակազմ հարուստներու համար իսկ։ Վերջին տարիներն բարեբաղդաբար հարսանեաց Եկեղեցւոյ մէջ տեղի ունենալն պարտաւորիչ ըրին և այս բանն յաջողեցաւ «Արևելքի» երբեմնի շաբաթական նօթերու խմբագիր սրամիտ «Արէտ»ի քննադատական յօդուածոց ազդեցութեան և ներշնչման շնորհիւ։ Քահանայական դասի անկման պատճառներէն մին ամուրի եկեղեցականաց մեծ խումբիմը Կ. Պոլսոյ մէջ ներկայութիւնն է, որով սանձգութիւններ կ'ըլլան քահանայական իրաւանց, ու փառասէր ժողովուրդն ասոնց ներկայութենէն կ'ախորժի աւելի գովաբանուելու մարմաջէն բռնուած։ Կան քահանաներ որք ամուսնութեան միջնորդութիւն կը կատարեն, այլք՝ հողի, խանութի, և տան վաճառմանց միջ-

նորդութիւն ալ կ'ընեն: Կան վերջապէս վաճառականութիւն ընող և նոյն իսկ «քօնսօլիտ խաղացող» քահանաներ: Ըստ արժանահաւատ անձանց վկայութեան «սիրոյ միջնորդ»... երէցներ ալ կան:

Քահանաներն միշտ պատրուակներ կը փնտռեն կարելի եղածին չափ բացակայելու եկեղեցական պաշտամունքէ. և այն եկեղեցին ուր 8–10 քահանայ կայ՝ ընդհանրապէս մէկ երկուքը միայն ներկայ կը գտնուին, կարգաւ հանգիստ կ'ընեն և իրենց շահեկան գործերուն կը հետապնդեն:

Քահանայք ոմանք ոչ միայն իրենց շրջանին՝ այլ եւ անկէ առաջի եօթնեկին Եկեղեցի կը մնային, և տուն չէին երթար. այդ հին աւուրց սովորութիւնն մոռացուած է այժմ:

Մենք այնպէս գիտենք որ քահանայք իրենց վարուք, բարուք և ընտանեկան կեանքով այլոց օրինակ պարտին ըլլալ. ընդհակառակն դիտել տուին ինձ թէ՝ քահանայից ընտանեկան ներքին վիճակն ամենէն խառնակն է, և ընդհանրապէս «շնորհունակ» կ'ըլլան երէցկիններն, իսկ իրենց աղջիկներն ու զաւակներն «նշանաւոր» կ'ըլլան վարքով...:






## ԱՇԽԱՐՀԱԿԱՆ ԴԱՍԱԿԱՐԳՆ

Կ. Պոլսոյ հայ մեծատուններէ ոմանք ազգասէրներ են, որք ազգին նպաստելու կը ջանան միշտ, կը

մասնակցին ամէն կարգի հանգանակութեանց, աղքատին կ'ողորմին, անկեալին կ'օգնեն, ուսանողին կ'օժանդակեն, եկեղեցեաց, դպրոցներու և Ազգ. բարեգործական հաստատութեանց կը նպաստեն, Ազգ. ժողովներու ու Յանձնաժողովոց կ'անդամակցին, ու իրենց ազգայնոց բարօրութեան համար շարունակ կը մտածեն: Ասոնց թիւն քիչ է դժբաղդաբար, և ասոնց դուռներն են որ ստէպ ափ կ'առնուին: Իսկ մեծատուններու մի կարևոր մասն անտարբերներ են, ո՛չ Ազգ. գործոց կը մասնակցին և ո՛չ ալ կը նպաստեն, և եթէ երբեք բան մը ընեն իսկ՝ աւելի իրենց մէկ ծանօթին կողմանէ առաջարկուած ըլլալուն ու անոր մօտ ամօթով չմնալու համար է: Ասոնք ստէպ թղթախաղի սեղաններու շուրջն կ'որոնեն իրենց հաճոյքն, և քաղքենի զուարճութեանց համար լիաբուռն կը ծախսեն անհաշիւ կերպով: Ասոնց նշանաբանն է կին, խաղ, գինի: Այս երկու առաջին դասակարգերուն միջանկեալներ ալ կան, որք մերթ կը յիշեն իրենց ազգային պարտքն, ինքզինքնին ազգասէր կը ցուցնեն, և երբ նպաստեն՝ կ'ուզեն որ իրենց նուիրատուութիւններն ի վերայ տանեաց քարոզուին ու ներբողուին:

— Կառավարութեան հայ պաշտօնեայներուն թիւն երթալով կը նուազի, զի մեռնողներու և ծերութեան հետևանօք գործէ քաշուողներու տեղ նորեր չեն հանիր, այդ է կառավարութեան արդի քաղաքականութեան պահանջքն: Կառավարական հայ ազգի պաշտօնէից մի մասն Ազգ. գործոց գլուխ կը գտնուի, և այդ՝ նոյն իսկ կառավարութեան ստիպմամբ՝ զի անոնց միջոցաւ աւելի լաւ ու ըստ իւր քաղաքականութեան

կրնան ընթանալ Ազգ. գործերն. իսկ ուրիշներ բոլորովին անտարբեր են՝ և հազիւ կը գիջանին իրենց հայ ըլլալն ծանուցանել, ատոնց մէջ ոմանք թուրք անուններ առած են իբր մականուն։

— Միջին և խոնարհ դասակարգի հայերն, բաւական լաւ պահուած են ընդհանրապէս, աւելի հայու սիրտ ու զգացում կը կրեն, և նախանձախնդիր են Ազգ. սովորութեանց. իրենց զաւակաց Ազգ. կրթութիւն կուտան, եկեղեցասէրներ և բարեպաշտներ բաւական թիւ մը կը կազմեն ատոնց մէջ, և ջանադիր են իրենց կարողութեան չափովը նպաստել Ազգ. Հաստատութեանց։ Կան անշուշտ և ատոնց մէջ անտարբերներ, եւրոպամոլներ, Թրքամոլներ և հայութիւննին չխոստովանող վատեր։

— Գալով ընտանեկան ներքին կենաց՝ մեծապէս փոխուած է Կ. Պոլսեցի հայն, ու ընդհանուր առմամբ կրնամք ըսել թէ՝ նա սկսած է կորսնցնել իր ընտանեկան յարկի նշանակելի սրբութիւնն՝ որ գլխաւոր պատճառ եղած է իր ազգութեան պահպանման, և որուն համար իսկ Եւրոպացի ընկերաբանից և ճանապարհորդաց գովասանաց արժանացած է։ Հայ կինն, մանաւանդ բարձր և հարուստ դասակարգինն կը սիրէ փայլիլ, և առաւօտէն կը ծախսէ այդ նպատակով, սիրահարէ եւրոպական վարուց և բարուց, զորս կ'ընդօրինակէ կապկաբար և սաչէպ՝ յոռի կողմերն առնելով։

Հինաւուրց հայ կնոջ խնայողութիւնն անհետացած է, և կարծես մրցում մը կայ հայ կանանց մէջ աւելի փայլելու, և աւելի ճոխ երևալու. նոյնիսկ մի-

ջակ կարողութեան տէր ընտանեաց մէջ՝ այդ նմանելու և մրցելու հիւանդութեան հետևանօք առտնին ծախսերն այնչափ շատցած են՝ որ Հայոց մէջ սնանկութիւնք իրարու կը յաջորդեն, և շատ մը երիտասարդներ առ ի զգուշութիւն նախապատիւ կը համարին ամուրի մնալ, և կամ մեծ դրամօժիտով աղջիկներ կը փնտռեն։

— Զաւակաց դաստիարակութիւնն և կրթութիւնն աւելի մակերևոյթային է ու սնամէջ, կ՚ուզեն աւելի լաւ հագուիլ, արդուզարդ ընել, սրահներու և պարահանդէսներու մէջ փայլիլ, եւրոպական լեզուներ խօսիլ. բայց ասկէ անդին երթալու չէ, ստէպ չեն գիտեր մաքուր հայերէն մը խօսիլ և աւելի նուազ՝ գրել, զի չեն ճանչնար իրենց Եկեղեցին ու Ազգը. պատմական աշխարհագրական ընդհ. ծանօթութեանց և մանաւանդ գիտական պաշարնին շատ սահմանափակ է։ Ի մի բան եւրոպականացեալ կապիկներ են ։

— Քանի որ ներքին կենաց մէջ մտանք, յիշատակեմք և խաղամոլութեան ախտն որ սկսած է ճարակել. մանաւանդ հարուստ դասակարգին արանց և կանանց մէջ, ու այդ անձեր մանաւանդ կինել պարծանօք կը խօսին թէ՝ գիշերներն թղթախաղով կը զբօսնուն, թէ ստէպ 20–30 ոսկի կը կորսնցնեն կամ կը շահին մէկ գիշերն...։ Այդ գումարներով քանի անօթիներ կրնան կշտացնել, մերկեր հագուեցնել, ցուրտէն դողացողներ տաքցնել, ուսումնատենչ պատանիներու նպաստել, ի մի բան շատ մը թշուառներու արտասուքներն սրբել։

— Հակառակ այս ամենուն՝ դեռ Կ. Պոլսոյ վաճառականական հրապարակին մէջ մեծ դեր մ'ունին Հայերն, և գործառնութեանց 70 %ն իրենց ձեռքն կը համարուի: Անկէց 20 տարիներ առաջ 90 %ն հայունն էր, և որ հաւանականաբար երթալով պիտի նուազի այս համեմատութիւնն, քանի որ Եւրոպական տարրերն մանաւանդ Գերմաններն այնչափ կը նպաստաւորուին:

Հայաբնակ գաւառաց մէջ վաճառականութիւնն ամբողջութեամբ Հայոց ձեռքն էր քանի տարիներ առաջ: Այժմ օտար ազգութիւնք, մանաւանդ իսլամք ես սկսած են զբաղիլ առևտուրով, զոր քաջալերելու համար ամէն կերպով կը նպաստաւորէ Թուրք կառավարութիւնն:

Կ. Պոլսոյ՝ Հայոց հրապարակին վրայ՝ վաճառականութեան մէջ ամենէ աւելի փայլողներն կեսարացիներն են, որք մեծաւ մասամբ իրենք ստեղծած են իրենց դիրքն, կամ իրենց հօրմէն ժառանգած են. սակայն հաւանական է որ իրենց ներկայ ընթացքով իրենց զաւակներ և մանաւանդ թոռներն ոչ թէ պիտի աճեցնեն իրենց հարստութիւնն՝ այլ պիտի փճացնեն:

— Ազատ արհեստներն, — բժշկութիւն, իրաւագիտութիւն և ճարտարագիտութիւն երբեմն աւելի Հայոց յատուկ էին, այժմ կառավարական ջանքով ու խրախոյսներով այլ ցեղերու մէջ ալ հասած են ու կը հանին, ազատ արհեստաւորներ:

Գեղարուեստի մասնաւոր ճիւղերն, մանաւանդ ճարտարապետութիւն Հայոց յատուկ էր, այժմ այլ ցեղերու մէջ հասած են ու կը հանին ճարտարապետներ: Նկարչութեան, փորագրութեան, քանդակագործութեան

